# ԴՈՂԸ

ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ



Թեև այստեղ ոչ մի գաղտնիք չկա, բայց որպես գաղտնիք պիտի ասեմ, որ «Պիոներ» ամսագրի և «Պիոներ կանչ» թերթի այսօրվա ընթերցողներից շատերը ապագայում պիտի դառնան գրողներ, նկարիչներ, դերասաններ, երաժիշտներ:

Ինչ խոսք, որ այն պիոները, որն ուզում է գրող դառնալ, ուզում է Չարենցի պես գրող դառնալ, եթե նկարիչ՝ Սարյանի պես, և եթե երաժիշտ՝ Կոմիտասի, Խաչատրյանի, եթե դերասան՝ Փափազյանի, Հրաչյա Ներսիսյանի պես: Ամեն մարդ, հատկապես փոքրահասակները, ուզում են մեծ լինել, մեծ, շա՜տ մեծ...

Ես ուզում եմ ձեզ պատմել տասներեք տարեկան մի պատանու մասին, որը հետագայում դարձավ նշանավոր ռեժիսոր: Նրա անունը Վարդան էր. Նրա հետ մենք հաճախ Ալեքսանդրապոլի Կազաչի պոստ կոչված որբանոցային աշխարհից քաղաք էինք փախչում՝ ներկայացումներ տեսնելու համար: Ո՞վ այդ տարիքում չի սիրում ներկայացում գնալ... Բայց ներկայացման ընթացքում ես ավելի շատ կողքիս նստած Վարդանին էի նայում, քան՝ բեմին: Նայելով նրա դեմքին, ես առանց սխալվելու գուշակում էի բեմի վրա խաղացող մեծ դերասան Արմեն Արմենյանի դեմքի արտահայտությունը: Վարդանը նստած իր տեղում, դերասանների հետ խոսում էր, ուրախանում, զարմանում էր, բողոքում, շողոքորթում, զայրանում, և այս ամենը լուռ, դեմքի արտահայտությամբ: Այդ բանն ինձ այնքան հետաքրքիր էր թվում, այնքան զվարճալի, որ կրկնում եմ, ես բեմից ավելի սիրում էի նայել Վարդանի դեմքին:

Ընդմիջումներին նա դուրս չէր գալիս, կարծես տեղում մեխված մնում էր նստած, սպասելով վարագույրի բացվելուն: Իսկ ներկայացումից հետո, ամբողջ ճանապարհին և մի քանի օր, Վարդանը «խաղում» էր Ֆրանցի, Պաղտասար աղբար և ուրիշ դերեր, որոնք տպավորվել էին նրա հիշողության մեջ:

Եղավ մի օր, երբ Վարդանի հետ որոշեցինք որբերի ուժերով ներկայացում տալ: Եվ որովհետև մեր թատրոնին վայել պիես չգտանք, ես նստեցի և մի քանի օրվա ընթացքում մի կոմեդիա թխեցի, որը կոչվեց «Պոետն ու արտիստը»: Եվ որովհետև պիեսը պատկանում էր ոչ թե Շիլլերի, Պարոնյանի, այլ իմ գրչին, ես էլ նշանակվեցի ղեկավար

ՄԱՐՏ
№ 3 1961 Թ.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

կամ ինչպես այն ժամանակ անվանեցինք՝ «թատերապետ»...

Սկսեցինք փորձերը: Կոմեդիայի գլխավոր հերոսը պոետն էր, և այդ դերը բնականաբար հասավ Վարդանին: Ես հիմա լավ չեմ հիշում գրածիս բովանդակությունը, բայց հիշում եմ, որ... Չէ՛, ոչի՛նչ չեմ հիշում:

Եկավ ներկայացման օրը: Կազաչի-պոստի հսկայական պահեստներից մեկը վերածվել էր թատերասրահի: Դահլիճը լցվել և աղմկում էին հազարավոր որբեր և որբուհիներ, կամ ինչպես հիմա ենք ասում՝ մանկատան սաներ ու սանուհիներ: Քաղաքից հրավիրված էր հատուկ վարսավիր՝ գրիմ անելու համար: Ես մտա «կուլիսները», ստուգելու համար գործերի ընթացքը:

Եվ այս է, որ չեմ մոռանում. երկար մազերով, «թիթեռնիկ» փողկապով, գրիմավորված Վարդանը նստել էր մի խուլ անկյունում և ... դողում էր: «Հիվանդացել է,—անցավ մտքովս,—ներկայացումը կարող է տապալվել...»



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

— Վարդա՞ն, հիվա՞նդ ես,—հարցրի ես:
— Հիվա՞նդ, ինչու՞ հիվանդ, ո՞վ է հիվանդ:
Ես նայեցի նրա դեմքին: Աչքերը փայլում էին առողջ փայլով. կամ ինչպես շատ անգամ կարդում ենք՝ ոգևորության կրակով:

Ոգևորության կրակը վատ բան չէ, վատն այն է, որ տղան դողում է ասես տաքության մեջ:

Ձեռքս դրի ճակատին: Ոչ մի տաքություն:

— Դու ինչու՞ ես դողում,—փոխեցի իմ հարցը:

— Դողու՞մ եմ, ինչու՞ եմ դողում... իսկ մյուսները չե՞ն դողում:

Ո՛չ, բացի Վարդանից ոչ ոք չէր դողում:

«Ահա թե ինչ է նշանակում 15 տարեկան հասակում բեմ բարձրանալ: Նա կկորցնի գլուխը, և իմ աննման կոմեդիան կկործանվի».—մտածում էի ես:

Հնչեց երրորդ զանգը, և վարագույրը բարձրացավ:

Սկսվեց ներկայացումը: Բեմի վրա Արտիստն է, նրա քույրը, մայրը: Ինչպես բոլոր դերասանները, գնում են ետ ու առաջ, խոսում, իսկ դահլիճում... խո՛ւլ դահլիճում ոչ մի արձագանք...

Բայց ահա բեմ է մտնում Վարդանը, մտնում հաստատուն քայլերով, ինքնավստահ, առույգ: Մի քանի նախադասություն, և բեմը ջերմանում է, հանդիսատեսները լարվում են, ծիծաղի թեթև մի ալիք է անցնում դահլիճով, հետո ավելի և ավելի մեծանում են ալիքները, բռնում ողջ դահլիճը... Ներկայացումը վերջացավ: Ծափերի որոտով Վարդանին մի քանի անգամ բեմ կանչեցին:

Վարագույրն իջավ: Ես նետվեցի կուլիսները:

... Հիմա ես գիտեմ, թե ինչու էր դողում Վարդանը, հիմա ես գիտեմ, որ առանց այդ դողի չի եղել, չկա ու չի լինի ոչ մի արվեստագետ, գրող, թե նկարիչ, երաժիշտ, թե դերասան:

Արվեստի ուժից չեն դողում միայն նրանք, ովքեր արվեստագետ չեն ծնվել: Առանց այդ դողի արվեստագետը արվեստագետ չէ, այլ արհեստավոր:

Ես գիտեմ, որ «Պիոներ» ամսագրի և «Պիոներ կանչ» թերթի այսօրվա ընթերցողներից շատ շատերը ապագայում կուզենան դառնալ երաժիշտներ, նկարիչներ, դերասաններ, գրողներ:

Ինչու՞ գրեցի այս մասին: Ինչու՞ հիշեցի փոքրիկ Վարդանի ստեղծագործական դողը: Այդ դողով նա դարձավ նշանավոր Վարդան Աճեմյանը:

Ես կուզենայի, որ իմ փոքրիկ բարեկամները դողալով ոտք դնեին արվեստի սեմին: Ես կուզենայի, որ նրանք իսկական արվեստագետներ լինեին:



# ԳԼՈՒԽ-ԳՈՐԾՈՑԸ



ՎԻԳԵՆ ԽԵՉՈՒՄՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Զարդ ու պատկեր ունեցող հազարավոր ձեռագիր գրքերի միջից. այսօր էլ ինձ կանչում է մեկը: Կանչում է կաշեկազմ, մագաղաթաթերթ մի ձեռագիր, որ դրված է մյուսների շարքում, Մատենադարանի մետաղե պահարաններից ներս:

Ես գիտեմ, նա մի լուռ գիրք է, կարդացել եմ արտագրող գրչի և զարդարար ծաղկողի անունները: Եվ գիտեմ, որ եթե խոսում է ձեռագիրն իր մանրիկ, սևատող գրերով, իր զարմանալի պայծառ զարդանկարներով, կրկին ինչ-որ բան մնում է չասված ու չավարտված: Եվ կարդացել եմ դարձյալ, մի ուրիշ մատյանում, իմ սիրելի գրքի ծաղկողի մասին այսպիսի տողեր:

«Դառն ու դժվարին էր ժամանակը, սով էր համատարած, առ ու ավար էր Աշխարհում Հայոց... Եթե հանդիպեք այս գրին բան, երեսուն սերունդ հետո, հիշեցեք ինձ՝ Երիցակ անարժան գրչիս և ծաղկողիս, ինչպես նաև Մոմիկ անունով պատանուն, որ որբ էր մանկությունից և մխիթարեց ինձ անօգնական ծերության օրերին իր հանճարով... Եվ անմեղադիր եղեք, որ տառս և գիծս ծուռ եկան և արվեստս դարձավ գունաթափ...»

Ու երբ մտաբերում եմ այս գաղտնիմաց տողերը, թվում է, թե դարերի լռությունն է խոսում իմ շուրջ բոլորը, և հեռավոր այդ հեռուներից գալիս, ինձ է հասնում անծանոթ, հազիվ լսելի մի ձայն:

## Ա.

Մոմիկը ես եմ: Իմ իսկական պապը Երիցակ ծաղկողը չէ: Ես նրան իմ պապն եմ համարում՝ որովհետև տասնհինգ տարեկան եմ և աշխարհում ո՛չ ոք չունեմ նրանից բացի:

Մի հավատաք նրա գրած խոսքին, թե իբր անարժան է, հիշատակվելու և գունաթափ են իր ներկերը: Նա մե՜ծ, շա՜տ մեծ մարդ է և շատ նշանավոր՝ Աշխարհում Հայոց: Ո՞ւմ ասես նա չի հիացրել իր երկար կյանքի բոլոր տարիներին: Եվ հատկապես Անի քաղաքում, որտեղ մի ժամանակ նա շրջապատված էր փառք ու համբավով...

Թե ինչո՞ւ, մենք հիմա չենք ապրում այդ քաղաքում, ես ամբողջ իսկությունը չգիտեմ: Այնտեղ մի վատ դեպք է պատահել և դարձել պատճառ, որ Երիցակ պապը քաշվի ճանապարհներից կողք ընկած այս ձորամեջ գյուղակը:

Եղել, կատարվել է: Բայց կրկին նշանավոր է իմ Երիցակ պապը: Դուք այդ կհասկանաք իսկույն, եթե կես աչքով էլ տեսնեք, թե նա ինչպես է



ձեռք զարկում ծաղկելու, երբ գրքի երեսները վեր ու վար ծածկում է գրով: Գլուխներից առաջ և լուսանցքներում նա միևնույն եղեգնյա գրչով, հազար ու մի հնարամիտ զարդ է հյուսում, հազար պատկեր քաշում, ծաղկազարդում բոլո՜ր, բոլո՜ր գլխատառերը:

Երկինք, ծով, գետ ու աղբյուր և ամեն նկարելիս, նա գործածում է թանկագին քարի փոշուց եփած այն մուգ կապույտ ներկը, որ կոչվում է լաջվարդ: Դայլի, ծովագի աչք ու երախ, Թռչունի ոտք ու կտուց և էլի շատ բան նկարելիս, Երիցակ պապը բանում է հայոց որդան՝ կարմիր կրակեբանգ գույնը...

Մենք շա՜տ ներկեր ու թանաքներ ենք եփում,







Նույնիսկ ջրից ու հրից չխամրող սաթե սև, արեգակնային նարինջ, զմրուխտե կանաչ... Եվ նույնիսկ ոսկի, որ չի կորցնում փայլը, և անգետները կարծում են, թե իսկական ոսկի է և փորձում են քերել մագաղաթների երեսներից ու հարստանալ:

Մենք միասին ենք ներկ ու թանաք եփում: Ես սիրում եմ և՛ այդ, և՛ ծաղկելու արվեստը: Աշխարհում այնքա՜ն գրավիչ, շնչավոր և անշունչ կա, որ եթե աչքդ տեսնում է, չես կարող նրանց պատկերը չդրոշմել ներկով...

Սկզբում պապը չգիտեր, թե ես կարող եմ ծաղկել, ինչպես ինքը: Սկզբում ես հենց այնպես փորձեցի:

Ամռան մի օր էր, արև ու շոգ: Նստել էի մեր տնակի ստվերում և, հանկարծ, մորիս աչքի առաջ թուղթ առա ու վրան տարօրինակ մի թռչունի պատկեր: Նա սուր մագիլներ ուներ, ինչպես ցին, կեռապոչ էր, վիզը երկար՝ օձի օղի պես, օղն օղով երկարող մինչև գլուխը: Գլուխն էլ թռչունի չէր, ականջ ուներ, երկարուկ գիսիկ...

Ես տուն ընկա, ինչպես երթիկից բանին, դուրս եկա թղթի մի անպետք կտորով, ներկով, հին մի գրիչով և կպա գործի: Նկարեցի: Պապն այդպիսի պատկեր չէր արել երբեք: Ու ոչ որ չէր արել...

Ու մեկ էլ, գլխավերևս կանգնա՛ծ տեսա նրան: Պապը թուղթս ձեռքն առավ, նայեց, ինչպես սովոր էր՝ խոժոռվելով: Բայց խոսք չասաց, ինչպես սովորույթ ուներ, միայն վերցրեց գրիչը և մի քանի տեղ մգացրեց կարմիր ներկը: Հետո, այդպես լուռ ու անխոս, երկար ժամանակ նայեց դռան սեմին, տխուր ու մտածկոտ հայացքը հառած ձորապռնկի բարակ բարդիների կողմը:

Բարդիների գլխին այնպիսի ամպեր էին իջել, արևգակից այրված, շիկացած, ասես մեծ մի ծաղկող որդան կարմիր էր խառնել նրանց ճերմակին: Պապն այդ տեսնո՞ւմ էր: Դժվար թե: Ես գիտեի, որ նա դժգոհ է ոչ թե ինձնից, այլ ինքն իրենից, ծերությունից, կյանքից:

Իսկ ես ուզում էի, որ նա որևէ խոսք խոսեր ու տեսներ բարդիների կատարին իջած ամպերի կարմիրը: Թեկուզ ասեր, որ ինքն իմ տարիքին, երբ կար տեսողություն և ջոկում էր ներկի վառը ու խամրածն ավելի լավ, արդեն հայտնի ծաղկող էր: Եվ թեկուզ կրկին զանգատ աներ, թե հիմա հաճախ կոր է գնում քաշած գիծը, մթնում է պատկերը: Կամ եթե այդ էլ չասեր, հիշեր, որ քաղցած է ու տաք համեղ ուտելիքների անունները...

Մենք սնվում ենք միայն կորեկ հացով, խաշով ու ջրով: Տարին բոլոր հաց ու խոտ չկա: Միշտ եղածը՝ ձորապռնկի աղբյուրի ջուրն է, որ շառաչով թափվում է քարից ու խառնվում գետի ջրերին:

Իսկ թե պատահում է, հարևան շինականներից մեկն ու մեկը, վարատեղ հաց ուտելիս, սառը սպաս, կամ ոսպով, կամ եղինջով ապուր է բերում մեզ համար, տոն է դառնում օրը: Երեկոյան պապը վեր է առնում ձեռագրի թերթերից մեկը և ազատ լուսանցքում, մանր տառերով շարոց է անում մի քանի բառ.



«Հիշեցեք նաև հայրս Վանինին, որ մի աման ապուր բերեց, և մենք Մովիկի հետ կերանք ախորժակով»:

Այսպես, ահա, ապրում ենք ես ու պապը: Օր է անցնում, շաբաթ է անցնում, ամիս ու



տարի... Գիշերները երկարո՜ւմ, երկարո՜ւմ են, եթե ձմեռը սառնամանիքն առաջն արած բշում է ձորով, կամ մշտական անձրևից վարարում է գետը, կտուրը կաթում է, բաղցը մաշում՝ անքնությամբ: Ցերեկները միշտ էլ կարճ են և հոգսաշատ: Երիցակ պապը նստում է գործի նաև ամբողջ գիշերը:

Այդ ժամանակ ես պառկում եմ մոտիկ ու կպչում նրա ոտքերից: Չեթի ճրագի աղոտ լույսի մեջ հայվելով, հեռանում ու մոտենում է Երիցակ պապի դալուկ դեմքը: Սպիտակ, ցած կուացած խուրձ հոնքերի տակ՝ աչքերը երբեմն փայլ են տալիս, երբեմն մթնում ինչպես մրակալված ճրագներ: Ու ես իմանում եմ, որ այդ պահերին նա կամ ինքն իրեն ուրախանում է, կամ տխրում: Ուրեմն՝ կամ գտնում է երկար տարիներ որոնած զարդանկարի մի ձև, կամ նկատում, որ նկարածն այն չէ, ինչ կարող էր լինել, եթե վրա չգար ծերությունը:

Ես նայում եմ նրա ձեռքերին և գլխի եմ ընկնում, թե ինչ է նշանակում նրա ասած «որոնել» բառը: Երկա՛ր, քիչ ոլորվա՛ծ, մաշվա՛ծ են նրա բոլոր մատները, ձեռքի երեսով, ճոպանների նման խճճված ջլեր ու երակներ են ոլորվում: Այս ձեռքերով նա ամբողջ կյանքում միայն զարդաձև է դաջել մագաղաթների կոկ երեսներին: Այսինքն՝ ամբողջ կյանքում որոնել է գտնելու իր մանրիկ հեքիաթային թռչուններին, կենդանիններին, գազաններին, մարդկանց... Որոնել է աշխարհի գեղեցիկը և զարմացրել աշխարհին իր գտածով:

Զարմանք են նրա գլխատառերը: Բայց դրանք միայն գլխատառեր չեն: Տեսար՝ սկսում է մի հովազ ու մի բարայծ նկարել և, հանկարծ, նրանց կուչ ու ծիգ է բերում, հովազի սուր ժանիքը մխում բարայծի պարանոցը, ստիպում գալարվել, պտույտ տալ, մինչև ստացվում է ուզած տառի պատկերը...

Նստել ենք, մի անգամ, աղբյուրատակին, եղեգնուտից քիչ հեռու, նայում ենք երկնքում ճախրող արծվին: Լողում է օդում, եղեգների գլխին: Ու մեկ էլ քարի նման ցած է ընկնում, կեռ կտուցով կպչում եղեգնուտի եզրը եկած վայրի բադից, որին ոչ ես, ոչ պապը չէինք էլ նկատել: Բադը ճչում է և փռելով կարմիր ոտքերը՝ ճապաղում գետնին:

Իրիկունը Երիցակ պապը դրանից զարդատառ շինեց: Իսկ ես, մինչ նա ներկում էր տառը, մագաղաթի մի անպետք մասունքի վրա նկարեցի տեսածս: Ականջումս, խեղճ բադի, աղեկտուր ճիչն էր զնգում. աչքիս առաջ ճապաղում, հողից էին կպչում նրա երեր ոտքերը:

Երիցակ պապը թողեց գործը, նայեց, ժպտաց: Հավանել էր երևի:

— Ճչում է անիրավը,— ասաց:— Ականջ դի՛ր, տե՛ս ոնց է ձայնը գլուխը գցել:

Եվ նորից ուզում էր գործը շարունակել, բայց ինչքան փորձեց, չստացվեց ոչինչ: Դժգոհ արածից, նա փակեց աչքերն ու մնաց, այդպես:

— Հիվա՞նդ ես, պապի,— վախեցա ես:

— Գործի՛դ մնա,— աչքը չբանալով ասաց նա:

Եվ քանի որ այդպես ասաց, քանի որ միտքս դեռ իմ պատկերների հետ էր, ես քաշեցի մի այլ, մի կարմիր, երկարավիզ աքաղաղի պատկեր, այնքա՜ն կարմիր, ինչպես մառախուղի մեջ բարացած արեգակ:

— Որտե՞ղ ես այդ հավքը տեսել,— նորից բարկացավ պապը:

Պատասխանեցի այսպես:

— Տեսել եմ, երբ փակել եմ աչքերս, ինչպես դու ես անում նկարելուց առաջ: Մտքով եմ նկատել տեսքն էլ, գույնն էլ և կեցվածքն ամբողջովին, որ ահա կա թղթիդ վրա...

— Փակ աչքով՝ ինչպես ի՞նքս,— հարցրեց նա և թվաց՝ չի բարկանում: Բայց զայրույթ կար խոսքի մեջ:

— Ես վաղուց է, որ մտքով ոչինչ չեմ նկատում... Ի՞նչ ես դու տեսնում, և ի՞նչ առավել, քան ծաղկող Երիցակը...



Ու երբ այդպես ասացվեց, նա ելավ ու գնաց տնից, իսկ երբ վերադարձավ, մթնել էր ձորը, միայն վերևի բարդիներն էին սևով նկարվել աստղառատ երկնքի վրա:

Բ

Իմ կարմիր աքաղաղն ամեն ինչ փչացրեց: Երիցակ պապը հավաքեց գիր ու զարդը, կիսատ ձեռագիրն ու դրեց մի կողմ: Եվ մնաց գործ

ու բանից զուրկ: Առավոտյան դեմ գնում էր խոտ ու արմատ հավաքելու, կեսօրից մինչև իրիկուն նստում էր դռան սեմին, իսկ մութը վրա գար թե չէ, պառկում էր, թեպետ մաս-մաս, կտոր-կտոր էր քնում:

Ինչպես եղավ, ամառնամուտին, մի օտար ճանապարհորդ ներկ ու թանաք առավ Երիցակ պապից և փոխարենը մագաղաթե չծաղկված մի աղոթագիրք տվեց: Մյուս առավոտից մենք բանեցինք աղոթագրքը և թերթերը կրի շաղախի մեջ օր ու գիշեր պահելուց հետո, սուր դանակով քերեցինք գրի սևն ու գլխատառի կարմիրը: Եվ պապը հայտարարեց.

— Գրելու ենք, Մամիկ: Սրանց վրա գրելու ենք՝ երգ կա, հայրեն են կոչում... Լսածս ենք գրելու: Իրիկունն իջնելուց հավաքվում են արհեստի մարդիկ, խնջույք-մեջլիս են անում, հայրեն են լսում, կաքավող պարուհիների նայում... Ականջ դիր, ասեմ մտքիս եկածը.

Իմ բարձրագնա՜ լուսի՛ն,
Ո՞ւր կերթաս գիշերդ անհուն...

Եվ այսպես եղավ, որ Երիցակ պապը նորից կպավ գործի: Նորից նա օրն օրի գրում ու խոսք էր ասում, գրում ու կարդում էր բարձրաձայն, գրում ու ոգևորվում:



Այդ օրերին Անի քաղաքից մեզ այցելության եկավ Մարիանոս անունով արհեստի տեր մի տղամարդ: Մարիանոսի արհեստն այն էր, որ թափառում էր քաղաքից-քաղաք, ամրոցից-ամրոց և նոր կանգնեցված շինվածքների ճակատներին արևի ժամացույց էր փորում:

Նրան տեսնելով, պապը սար ու ձոր ընկավ: Նստեցրել էր իր աթոռակին, պտտվում էր բոլորը, հուզված հարցուփորձ էր անում: Հարցնում էր, իհարկե, Անի քաղաքի նորություններից.

— Քաղաքամայրդ, ասում են, շա՞տ է փոխվել... Լավ է, որ նորոգել են Կանի փողոցի սալահատակը: Ապրել եմ այդ փողոցում: Ծաղզուկակում էլ եմ ապրել: Նեղ մի տախտակ է, տանում է Հասնեցոնց հյուրատուն, թեքում մեծ շուկան, մյուս ծայրով հասցնում զինագործների կրպակներին...

Հետաքրքրվում էր, թե ո՛վ է մնացել գրիչ ու ծաղկող ծանոթներից, բարեկամ արհեստավորներից.

— Ո՞ղջ է դարբին Բագրը... Լավ է, որ ողջ առողջ է ու աշխատում դեռ կա: Այդպես էլ նրան մի ծաղկած գիրք մնացի տալու: Խոստացա, չհասցրի: Ձեռագիր գնողն ուրիշ մարդ էր, իրեն չտայի, կխեղդեր, կքշեր քաղաքից...



Պապը չշարունակեց: Մարիանոսը հարցական վեր ձգեց հոնքը, ապա նայեց իմ կողմը: Պապն աչք-հոնքով զգուշացրեց, որ նա ավելորդ խոսք չթռցնի բերնից: Բայց ես գլխի ընկա. ավելորդ խոսքը կարող էր վերաբերել այն դեպքին, որի պատճառով Երիցակ ծաղկողը թողել հեռացել էր Անիից:

Հետո, այնուամենայնիվ, ժամացույց փորողը խոսքն առաջ տարավ զգուշանալով:

— Պատվիրե՛ց, որ հարցնեմ, թե գիրք չունե՞ս քո ջահելության օրերին ծաղկած... Նորը, նրա ասելով, ոչ որի պետք չի գա այլևս: Եվ երբ հիմա պղտոր են պատկերները, երանգներն էլ այն չեն բոլորովին:

— Հա՛, —Երիցակ պապը տեղ որոնեց նստելու. չգտավ: Ու մնաց: —Ասա իրեն՝ թե ոչ հինը կա, ոչ նորն է ծաղկվելու...

Սակայն Մարիանոս ժամագործն արդեն տեսել էր սնդուկին շաղ անցած մագաղաթի նոր թերթերը. ցույց տվեց գլխով և կրկին վեր ձգեց մի հոնքը: Այսինքն, իսկ սա՞:

— Թո՛ղ Մարիանոս, — կարճ կապեց պապը և շուրթերն ամուր սեղմեց իրար: —Այն դեպքից հետո Երիցակ ծաղկողն արդեն չկա: Այդպես էլ ասա իրեն. ասա՝ Երիցակը մեռել է վաղուց: — Ու կրկին շուրթերն ամուր իրար եկան, կարծես ոչ միայն վիրավորանքից, այլ նաև զսպելու «այն դեպքի» մասին խոսելու ցանկությունը:

Մարիանոսն աչքը պահեց ձեռագրի տաղարանի վրա, կարդաց մի երկու տող, խորամանկ ժպտաց և, հանկարծ, կռանալով, դուրս քաշեց մի թերթ...

Երբեք թռչնագարդ էր արված լուսանցքն ի վար, երբեք կայծկլտացող կրակ. մի նազող լորամարգի սուր գլխափետուրով, վզին կարմիր օղ-շարոց, և մի կապույտ բադ, որ կտցում, քորում էր փորատակը, և ապա մի ուրիշը՝ օձը բերնին, վազք առած արագիլի մի ձագուկ...

Այդ ե՛ս էի արել: Երիցակ պապից թաքուն, գիշերը, երբ նա քնել էր: Ես ուզում էի նրան օգնած լինել: Ես ոչ մի վատ բան չէի մտածել...

Պապը, թվաց, շփոթվեց: Նա արագ խլեց թեր-

թը և, նույնիսկ չնայելով, խցկվեց մյուսների տակ։

— Մեկ-մեկ սառցվում է...Քիչ է պատահում,— քրթմնջաց նա։



Եվ ես շունչ քաշեցի։ Չէ՛, գլխի չէր ընկել։ Չէ՛, մտամոլոր կանգնել էր, երևի ուզում էր իմանալ, թե ե՞րբ և ինչպե՞ս է այդ պատկերները քաշել։ Ո՞նց իմանար, ի՞նչ հիշեր։

Այլևս լռությունը չխախտվեց, մինչև ժամացույց փորողը կաց բարև ասաց ու գնաց, հետը բերած երկու քաղաքը թողնելով ներկամանների կողքին։

Դրանից հետո մեր կյանքում շատ բան փոխվեց։

Գիշերն իջնում է թե չէ, մի երկու տող գրելուց մի երկու կիսատ զարդ գծանկարելուց հետո, պապը պառկում էր քնելու։ Ես զգույշ բարձրանում էի տեղից, սովորում ճրագի լույսը, և աշխարհից գաղտնի ուղղում, փոխում պատկերի գիծը, ծածկում ներկով, նկարում նորերը։ Այսպես՝ ամեն շաբաթ, ամեն ամիս։

Իմ խեղճ Երիցակ պապին թվում է, թե հրաշքով հետ է եկել իր կորած ջահելությունը։ Նա արդեն հաճախ էր ժպտում, քիչ էր մռայլվում և երկար խոսք էր ասում մեր արվեստի, գեղեցիկի, կյանքի ու իր Անի քաղաքի մասին։

Ասում էր.

— Անին ջահելություն է տալիս։

Ասում էր.

— Դու չգիտես, այդ մարդու խոսքը, որ բերել էր Մարխանոսը, թեպետ վրդովեց, ուժ էլ տվեց ինձ։

Եվ ասում էր.

— Դու տես, թե ի՛նչ զարդ ու պատկեր է ստացվում, Մոմիկ՝ ինչե՜ր են կերպվում մագաղաթների երեսներին...

Ուրեմն պապը հավատում է, թե միայն ինքն է ծաղկում մեր տաղարանը։ Ուրեմն Անին ու հուշն իսկապես ուժ էին տալիս նրան։ Էլ ի՞նչ էր պետք։ Եվ ես, մի օր, առաջարկ արի.

— Պապ,— ասացի,— արի Անի գնանք. այնտեղ ապրենք սրանից հետո։

Նա խոժոռվեց, անխոս շուռ եկավ իր քանոնին։ Գրածն ու արտասանածը տխուր երգ դարձավ.

Մարիկ, քո կարած շապիկդ
Կտրտեր, միսս կերևա...

Իսկ մյուս առավոտ, ծեգը ծեգին, մենք ճանապարհ ընկանք։ Մինչև կեսօր, և մինչև ետմիջօրե, քայլում էինք Անի քաղաքամայր տանող մեծ ճանապարհով։ Դժվար էր պապի համար այդքան գնալը։ Բայց նա հլու գալիս էր, ուրախ էր գալիս։ Ես քայլում էի մեկ առջևից, մեկ կողքից, մեկ ելնում էի ճամփից ու ճամփակողով էի գնում։

Առաջանում էինք, ու որքան մոտ էր գալիս քաղաքը, այնքան շատ անցվորներ էին հանդիպում։ Ձիավորն անտարբեր էր անցնում, փոշու ամպ կապում մեր գլխավերևում ու շուրջ բոլորը։ Ոտավորը չէր նայում մեր կողմը, երևի մտածում էր, թե մուրացկաններ ենք, ողորմություն կուզենք իրենից։ Բոլորն շտապում էին, միայն հայ և օտար վաճառականների քարավաններն էին համր քայլ փոխում, ինչպես՝ մենք։ Ուղտերը, ինչպես մենք, երկար ճամփա անցած, հոգնած էին և ծուլացած։

Մի քորոտ հիվանդ էր գնում ճանապարհից դուրս նեղ շառավիղով, հեռու քար ու փոսերի վրայով։ Նրա վզից կախված զանգակը կանչելով զնգում էր, զնգալով զգուշացնում անցվորներին՝ փախուստ հիվանդությունից խուսափելու։

Աղքատի տեսք ու շորով և մեր նման գլխաբաց մի տարեց մարդ էր վազում ձիավոր, կուշտ վաճառականների հետքով։ Նրա միջքին մի ահագին քար կար կապած։ Երիցակ պապն ասում էր, թե ծանր քարը նրա մեղքն է, որ տանում է իր հետ աշխարհեն աշխարհ։

Ջահել, մի շալակտար գինեվաճառ, գինու տիկն ուսին, եկավ ու անցավ մեզնից։ Մոտենալիս երգ էր ասում, հեռանալիս լռեց, անցավ՝ կրկին շարունակեց։ Երգը նրանցից էր, որ գրում էր պապը.

... Լույսը լույսին դուրս եկա,
Արեգակն աչացս դիմաց...

Գնում էին Անի, գալիս էին Անիից։ Ո՞վ ասես չէր տրոփում այդ լայնուկ ճանապարհի մանրացած փոշին։



Իսկ մենք Անի չէինք գնում։ Մենք գնում էինք կիսաճամփից թեքվելու մի կողմ, բարձր սարի կատարը ելնելու, հեռվից Անին տեսնելու։

Արեգակը երկնքից կախվելիս՝ տեղ հասանք, գնիթից թեքվելիս՝ բարձրացանք

սարը, նստեցինք կատարին։ Այստեղից պարզ երևում էին քաղաքի դռները, ատամնավոր պարիսպները, սրբատաշ շենքերի բարձրադիտ ճակատները, մատուռներն ու կտուրները... Բարձրիկ միջնաբերդն էր նաև երևում և մի հարբած, մոլոր փոշի, որ մայր մտնող արևգակի շողք-շառավիղի տակ խամրող ոսկեներկ էր հիշեցնում։

... Այսպես ամբողջ ամառն անցավ, աշունն էլ անցավ, իսկ մենք գնացինք, եկանք, տեսանք ու խոսք խոսեցինք քաղաքից, բնությունից, մարդկանցից, գույն ու երանգից։ Եվ գիշերները պապը քնեց ու ես մինչև լույս ձեռագրի առջև մնացի։ Ու ես մնացի իմ զարդ ու ծաղկի հետ մի ամբողջ ամառ ու մի լրիվ աշուն և ավելի։

Գ.

Ձմեռը վրա եկավ հանկարծ ու անժամանակ։ Ցուրտ էր, սառնամանիք, սյունասյուն ծուխ էր ելնում հարուստ երթիկներից։ Իսկ մեր տնակում ամեն օր ծխացող վառելիք չկար։

Անարև ձմեռը ծանր նստել էր կտուրներին, լցվել ձորը, պառկել ճամփաների երկարությամբ ու նրանցից դուրս և հեռու, ինչքան աչքդ կտրեր։ Իսկ մեր ձեռագրի երեսներին այրում էր թեժացած արեգակը։

Գարուն էր մեր ձեռագրի թերթերից ներս. զմրուխտին էին տալիս խոտն ու ծաղիկը, շյուղն ու ցողակալ ծիլը։ Ամառ էր, շոգ էր. բոց էր արձակում մեր պատրաստած ոսկին, ամեն զարդի մեջ կրակ էր վառվում։ Աշուն էր. կրակին խառնըված նարինջ կար, որդան կարմրին շաղախված լազվարդ...

Առաջ պարզելով ցրտից սառած մատները, Երիցակ պապը թեթև կպչում էր ծաղկազարդերին, տաքանում էր, տաքուկ նկզում ձմռան գիշերն ամբողջ։ Եվ կրկին մնում էի ես մենակ։ Մնում և դարձյալ ու միշտ գարուն նկար էի անում։ Վախեցած, թե մի օր կհասնեմ վերջին թերթին և կավարտվի այս արևոտ ուրախությունը։

Շատ ձյուն տեղաց, շատ ցուրտ օրեր անցան, մինչև ձեռագիրը, իսկապես, հասավ իր եզրին։ Այլևս տեղ չկար ծաղկելու, բան չմնաց նկարելու։

Եվ երբ ոչինչ մնաց անելու, Երիցակ պապը մինչև կես գիշեր չքնեց։

Նա վառեց հարս Վանիկի բերած մի գիրկ կիսաչոր շիվ ու ճյուղը, նստեց կողքին և վերջին երեսին գիր-հիշատակարան հյուսեց ժլատ խոսքով։ Հյուսեց, թե դժվար էր ժամանակը, թե ձեռագիրը գրեց ինքը, թե գիրքը եզրին հասավ այս թվականին... Գրեց, տեղից վեր հանեց ինձ, ասաց.

— Առավոտ բացվի թե չէ, ճամփա կընկնես դեպի Անի քաղաք։ Կգնաս, կմտնես քաղաքամայրը, կհարցնես Գորգիկ վաճառականին։ Ցույց կտաս։ Ձեռագիրը կտաս իրեն։ «Բերեցի,— կասես,— Գորգիկ։— Կասես.— Երիցակ ծաղկողն է ուղարկել, հավան եղար գին տուր»։ Կհավանի ու գին կտա։ Ինչքան էլ պակաս տա, շատ կասի։ Իսկ դու հոժար չես լինի։ Կավելացնի գինը, քիչ-քիչ կբարձրացնի, շա՜տ — շա՜տ կհասցնի։ Չես համաձայնի դարձյալ։ Կասես. «Օր է պատահել ամբաստանել ես Երիցակ ծաղկողին, թե աշխարհի նկարներ է անում. աստծուց վախ չունի, հավատ չունի, ծաղր է անում տեր ու տիրոջ, վանք ու եկեղեցու... Ամբաստանել ես,— կասես,— որ վերջին ծաղկավոր ձեռագրի գինը չտաս, դուրս անել տաս ծաղկողին քաղաքից»։ Ու երբ այս էլ կասես, կելնես նրա կողքից. ուղղություն կպահես Դարբնոց փողոցի կողմը, հարցով կիմանաս Բագրը վարպետի արհեստանոցը։ Շատ բարև կտաս, կասես. «Ինչ որ տաս, Բագրը վարպետ, հոժար ենք»։ Ու ինչ էլ որ տա, գիրքը կթողնես իրեն։ Իսկ նա, Մոմիկ, կպահի, մինչև քսան և մինչև երեսուն սերունդ կպահի, կհասցնի նրանց, ովքեր հեռու են ու գալու են մեզնից հետո. շա՜տ հետո...



Քնեցինք ես ու պապը լուսադեմին, երբ սուր աչքով կարելի էր համարել մեր առաստաղի մրոտ գերանների թիվը։ Պառկեցինք անթեղված կրակին մերձ, կպանք իրար ու քնեցինք։ Ժամ պիտի անցներ, որ ես ելնեի, ճանապարհ կտրեի։ Բայց իմ գնալը մնաց։ Եվ եղավ այսպես, որ մնաց։

Դեռ չեմ արթնացել, աչքս չի բացվում, որքան էլ զգում եմ, որ լույսի շառավիղը խփել է պատին, որքան էլ ձայն է գալիս ու լցվում ականջս. պապն է կանչում, դուռն են թակում... Եվ ապա, չեմ հասկանում՝ իրակա՞ն է, թե՞ երազի փշրանքն է մնացել գլխիս մեջ. տեսնում եմ սեմին կանգնած օտար մի մարդու չոր ու երկար հասակը։ Կանգնել, բարև է տալիս, փզվզող հայացքով նայում շուրջը։

— Չե՞ս ճանաչում,— ասում է։

— Ճանաչում եմ,— պատասխանում է պապը։

— Չէի՞ր սպասում,— ասում է։

— Ինչ կա որ, աշխարհ է, պատահում է՝ չես էլ սպասում, բայց կյանքը իրար է բերում,— պատասխանում է պապը։

— Եկել եմ տեսնեմ ի՞նչ նոր գիր ու ծաղիկ ու-



նես, Երիցակ։ Սիրով եմ եկել, աստված է վկա,– ասում է, բայց պապը չի պատասխանում։

Ես տարբեցի աչքերս, նայեցի, կպա պապի ծնկներին։ Երազ չէր. մարդ էր նրա մոտ, կանգնել խոսում էր, հայացքը չէր կտրում ավարտված մեր գրքից։

Երիցակ պապը մնաց նստած, ինչպես կար՝ մեջքը դեպի եկվորը, որ «այն դեպքի» պատճառ Գորգիկն էր, ձեռագիր գրքի հայտնի վաճառականը։

— Վաղուց իմացա, Մարխանոսը լուր բերեց,— ձայնը խեղդելով, կամաց ասաց գրավաճառը և մի աչքը փակելով, մյուս աչքը պսպղացրեց։— Մտածեցի, թե գամ, չեղավ, Երիցակ, շուտ չեղավ։ Լուր տայիր ինձ, կգայի, աստված վկա, վազելով կգայի...Բան ասացի՞ր...

Պապը ոչինչ չէր ասել։ Նա նստել էր, չէր շարժվում, կարծես աշխարհը նրա համար չկար այլևս։ Ու միայն ես էի երեսով դեպի այն մարդը, որ հարստացել, անուն էր հանել հայոց նշանավոր ծաղկող Երիցակի հրաշագարդ ձեռագրերով։ Եվ հիմա, որերո՞րդ անգամ, թերթում էր ծնկին դրած տաղարանը, ինքն իրեն խոսք մրմնջում։

— Այսքան տարի ապրեմ աշխարհում, այսքան շատ տարի, և էսպես մի գիրք տեսած չլինե՞մ... Տուր, Երիցակ, գինդ տուր՝ մի բան էլ ավելի։ Ի՞նչ ասացիր...

Բան չէր ասել Երիցակ պապը։ Բայց արդեն շուռ էր եկել պատից և խորը ու խռիվ հոնքերի տակ՝ ինձ էլ օտար սառնություն էր երևում. ձյուն ու ձմեռ։ Նա այդ սառն աչքերով հասավ Գորգիկ վաճառականին ու մնաց։ Եվ էլի գրավաճառը շարունակեց.

— Ձեռագիրդ մեծ է, շատ է մեծ... Հիշո՞ւմ ես, էն մեկն էլ էր մեծ... Էս էլ, քանի՞ գլուխ-գործոցդ ստեղծեցիր, Երիցակ վարպետ։ Չէ՛, մահ չունես երկնքի տակ...



— Գլուխ-գործո՞ց, ասում ես,— խուլ ձայնով հարցրեց Երիցակ պապը։— Էն մեկն էր, հա՞...

Հարցին պատասխան չեղավ։ Նայում էին իրար՝ պապը սառն ու սուր հայացքով, վաճառականը՝ փակելով բացելով աչք կոչվածը։ Այդ չորս աչքն այնքան բան ասացին իրար, այնքան տվին ու առան, հիշեցին ու հիշեցրին եղած անցածը, մնացածն ու լինելիքը։

— Չէ՛, Գորգիկ վաճառական,— վրա եկավ պապը,— էս մեկն ուրիշ է, տեսնում ես, որ շատ է ուրիշ։ Իմս նա էր, որ դու անվճար առար։ Սա իմ արածը չի, ես մաս չունեմ, ծաղկող Մոմիկին հարցրու. ուզեիրդ էլ, գին տայիրդ էլ։— Եվ ձեռքը դրեց ուսիս։

Գրավաճառն ուզեց բաց ձեռագիրը վար բերել ծնկից, բայց մի ձեռքով բռնեց, մյուսի թևքով սրբեց ճակատի քրտինքը։

Իսկ ես ոչ ձայն էի հանում, ոչ շարժվում տեղից, կպել էի պապի ծնկներից ու մնացել արմանք-զարմանքի մեջ։

Երիցակ պապը ծնկով կամաց հրեց ինձ, որ նշան էր, թե՝ վեր կաց։ Ու ես բարձրացա, համա-

քեցի, ծալեցի ձեռագիր մատյանը, դրեցի թևիս տակ։

— Չէ՛,— ասացի,— ես գիրք չունեմ վաճառելու։ Չէ՛,— ասացի,— գնալու ժամը հասավ. ճամփան երկար, Անի քաղաքը հեռու։ Ու որ գնաս, Գորգիկ,— ասացի,— քաղաքդ Անի որ հասնես, լուր տուր, թող Բագր վարպետը ճամփածայրը բռնի ու գա։ Գիրքը նրան եմ խոստացել, աստված վկա, ուրիշ ոչ ոքի չեմ տալու...

* * *

Այդ իրիկուն մնացինք անկրակ, մնացինք ցրտին գիրկ։ Վարար ձյուն էր տեղում, ոռնում էր բուքը, չէր հանդարտում։

Միայն ձյուն ու բուք չկար, ցուրտ չկար մեր հարկի տակ մնացած, դարբին Բագր վարպետին սպասող ծաղկած տաղարանի թերթերից ներս։

Երիցակ նշանավոր ծաղկողը ննջում էր, արթնանում, իսկ ես կպած նրան իմ մարմնով տաքացնում էի սառած մեջքը, մտածում անցած գնացածի և քանի, երեսուն սերունդ հետո եկող զարմանալի ժամանակի մասին։ Եվ ուզում էի, որ դուք լսեք իմ հեռավոր ձայնը, քանի որ ոչինչ չեք տեսնելու իմ տեսածից և իմ լսածից ոչինչ չեք լսելու երբեք։




ՀԱԿՈԲ ԿՈՋՈՅԱՆ

ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆԻ «ԳԻՔՈՐԸ» ՊԱՏՄՎԱԾՔԻ ՆԿԱՐԱԶԱՐԴՈՒՄՆԵՐԻՑ



ՀԱԿՈԲ ԿՈՋՈՅԱՆ

ՍԱՍՈՒՆՑԻՆԵՐԻ ՊԱՐ

Հայաստանի Պետական պատկերասրահ



# ԾԱՂՐԱՆԿԱՐՉԻ ԽՈՒՑԸ

*Օնորե Դոմյեն 19-րդ դարի ֆրանսիական ամենանշանավոր նկարիչներից մեկն է։*

*Նա ծնվել է 1808 թվականի փետրվարի 26-ին Մարսելում, ապակեգործի ընտանիքում։ Երբ լրացավ նրա յոթ տարին, ծնողները փոխադրվեցին Փարիզ։ Օնորեն սիրում էր թափառել մեծ քաղաքի փողոցներում, դիտել մարդկանց, զանազան տեսարաններ և նկարել դրանք։ Հետո նա աշխատանքի անցավ մի դատական կատարածուի մոտ և խանութում գիրք էր վաճառում։*

*Օնորե Դոմյեն ստեղծագործել է Ֆրանսիայի պատմության ամենափոթորկուն ժամանակաշրջանում, երբ ժողովուրդը վճռական պայքար էր մղում թագավորի և ազնվականների դեմ։*

*Նա թողել է 4000 վիմանկար, 1000 փայտագրություն, 700 գեղանկարչական և ավելի քան 60 քանդակագործական ստեղծագործություններ։ Դրանք այդ փոթորկալից դարաշրջանի ամենաաչքի ընկնող փաստաթղթերն են և մեծ վարպետությամբ ներկայացնում են բուրժուազիայի ու ազնվականության փչացող սովորույթները։*

*Դոմյեի արվեստը ամբողջովին կապված էր ժողովրդի այն պայքարի հետ, որն ուղղված էր ճնշողների ու շահագործողների դեմ։ Այն ժամանակվա պաշտոնական քննադատությունը չէր գնահատում նրա կատարած քաղաքական ուժեղ ծաղրանկարները և լռում էր։ Բայց Ֆրանսիայի մեծ մտածողներ Բալզակը, Հյուգոն, Դելակրուան, Կուրբեն շատ բարձր էին գնահատում Օնորե Դոմյեին և խոնարհվում նրա հանճարի առաջ։*

*Դոմյեն մեռել է 1879 թվականի փետրվարի 11-ին, ծանր աղքատության մեջ։*

ԴՐԱԳԱՆ ՏԵՆԵՎ

Նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ

— Ըստ էության, ես ձեզ ճանաչում եմ, պարոն։ Եվ ինձ համար շատ տհաճ է, որ հատկապես ինքս եմ ձեզ տանում բանտախուցը։ Բայց ի՞նչ կարող ես անել։ Ամեն մարդ իր արհեստն ունի։ Իմը՝ մարդկանց բանտարկելն է, իսկ ձերը՝ նրանց նկարելը, — ասաց բանտապան Սեն Պելաժը և կանգ առավ երկաթյա դռան առջև։ Նա գրպանից հանեց պարանին հագցրած բանալիների մի մեծ կապոց, ընտրեց մեկը և ճարպկորեն մտցրեց կողպեքի անցքը։ Դուռը բացվեց։

— Մտեք, խնդրեմ, կրկին անգամ արտահայտում եմ ափսոսանքս, — ասաց բանտապանը։

Երիտասարդը ներս գնաց։ Նրա հետևից չրխկաց կողպեքը։ Մեծ խուցը կիսախավարով էր լցված։ Մեկը գոչեց.

— Օհո՜, նոր թռչնակ։

Լռություն տիրեց։ Ապա նույն ձայնն ասաց.

— Վեր կաց, Ֆրանսուա, բավ է ննջես։ Հիմա դու քեզ կզգաս փարիզյան զբոսայգում։ Մեզ մոտ իսկական պարոն է եկել։

Նորեկը քայլեց ձայնի ուղղությամբ, բայց կպավ ինչ-որ բանի և ընկավ սալահատակին։ Անտեսանելի մի ուժեղ ձեռք օգնեց նրան վեր բարձրանալ։ Ծանոթ ձայնը նորից խոսեց.

— Մարդ աստծո, կուրացել ես, ի՞նչ է։ Ախր էդպես կարող ես աչքդ հանել....

Միայն այժմ նորեկը նկատեց խոսողին։ Սա վաթսունին մոտ մի տղամարդ էր՝ կախ ընկած ուսերով։ Մինչև աչքերը քաշած գդակի տակից երևում էին սպիտակած մազերը, այտին մի երկար սպի կար, որ սկսվում էր աչքից և հասնում մինչև վերին շրթունքը։

— Շնորհակալ եմ ձեզանից, բարեկամ, — շտապեց ասել նորեկը և ընկավ ամենամոտ հարդե ներքնակին։ Ծունկը կսկծում էր։

— Ոչինչ, կլավանա, — հանգստացնում էր նրան սպիով մարդը։ — Դու ընկար, որովհետև քո աչքերը դեռ չէին վարժվել կիսախավարին։ Առաջին րոպեներին միշտ այդպես է, — նա հանեց գդակը։ — Դե պատմիր, թե ինչի համար են քեզ գցել էստեղ։

— Ինձ բանտարկել են վեց ամսով։

— Գողությա՞ն համար։

— Ոչ։

—Ուրեմն դավաճանության համար,—վրա բերեց սպիով մարդը:— Դատելով հագուստներիցդ դու պատկանում ես մարդկանց հատկապես այս խմբին:

Նորեկը ծիծաղեց:

— Դուք նորից սխալվեցիք: Այդ ենթադրությունն էլ ճիշտ չէ:

— Բայց մարդասպանի բոլորովին նման չես,— զարմացավ հին կալանավորը: Հետո օրորեց գլուխը և փիլիսոփայեց.— ասենք երբեք էլ հաստատ բան չես կարող գիտենալ: Մի՞թե Շարլը նման էր մարդասպանի:

— Ճիշտ է,— ճչաց նրանց մոտեցող մի ուրիշ կալանավոր, որի քիթը նման էր գիշատիչ թռչունի կտցի:—Ախր նա մորթել էր յոթ հոգու, այնպես որ արտաքինից գուշակել չի լինի:

— Գրազ կգամ, որ նա մարդասպան չէ,— ասաց մեկ ուրիշը:

— Սատանան տանի, այդ դեպքում ինչի՞ համար ես դու այստեղ,—հարցրեց «կտուցը»:

— Ձեր բարի ու ամենաողորմած թագավորին ծաղրանկարելու համար,— նետեց երիտասարդը ատամների արանքից և նորից կռացավ, շփելով վնասված ծունկը:

— Ինչպես թե՛ ծաղրանկարի համար,- գոռաց սպիով մարդը:— Դու բոլորովին նման չես նկարչի: Դու նման չես նրանց, որոնց ես ճանաչում էի Լատինական թաղամասում: Ու՞ր է քո մորուքը: Դե, մի բան նկարիր՝ տեսնենք չե՞ս խաբում արդյոք:

Մարդը գրպանից հանեց մի քանի թերթ մաքուր թուղթ և ածխի մի կտոր: Երկու րոպեում նա նկարեց երկար սպի ունեցող կալանավորի դեմքը և նկարը մեկնեց նրան: Նմանությունը ապշեցուցիչ էր, հատկապես աչքերի արտահայտությունը:

— Մի տես, է՜,— ասաց սպիով մարդը:— Առաջին անգամն է, որ քաշում են պատկերս: Ֆրանսուա, տե՛ս,— նա նկարը տվեց իր կողքինին և բավականությամբ ավելացրեց,— էս սատանան ոսկի ձեռքեր ունի: Եթե նա նկարեր անվանի պարոններին, անշուշտ, նրան չէր վիճակվի խմել «նորին գերազանցության պարոն Մերսիեի» գարշահոտ վոիկը, որն ամեն օր մեզանից հափշտակում է 10-ական սու:

— Վատ խորհուրդ ես տալիս, բարեկամ,— պատասխանեց երիտասարդը:— Ես այստեղ ընկել եմ



ՕՆՈՐԵ ԴՈՄՅԵ — ԳԱՐԳԱՆՏՅՈՒԱՆ ԵՎ ՊԱՆՏԱԳՐՅՈՒԵԼԸ



հատկապես հարուստ պարոնների դիմանկարների պատճառով:

— Չի կարող պատահել:

— Դե, որ չես հավատում, նայիր,— երիտասարդը ծոցագրպանից հանեց լրագրի կտորների մի կապոց և տվեց սպիով մարդուն:

Սա սկսեց զննել դրանք: Մյուս կալանավորները կանգնած՝ նույնպես նայում էին:

— Դու հերթով թունդ հայհոյել ես մինիստրներին ու դեպուտատներին,— ասաց «կտուցն» իր բարալիկ ձայնով:— Կեցցե՛ս:

Մի վիմանկարի տակ գրված էր անունը՝ «Գարգանտյուա»:

— Ահա, սրա համար են նորին մեծության թագավորի դատավորները ինձ տվել վեց ամիս,— ասաց նկարիչը և ատամների արանքից նետեց մի հայհոյանք:

Կալանավորները կարեկցանքով նայեցին նրան:

— Ամոթ և խայտառակություն,— վրդովվեց նրանցից մեկը.— ճշմարտության համար մարդ են բանտարկում:

Նկարը պատկերում էր Լուի Ֆիլիպ թագավորին: Նա նստել էր բարձր գահին՝ ագահորեն բաց արած իր հսկայական, անկուշտ երախը: Գետնից մինչև բերանը հասնող մի սանդուղք կար դրված, որով մագլցում-բարձրանում էին թագավորական աստիճանավորները՝ փողով լի կողովները շալակած: Այդ փողերը նրանք հավաքել էին սոված ու տկլոր ժողովրդից և լցնում էին թագավորի բաց, անհատակ երախը: Ներքևում մի քանի կողոպտված մարդ աստիճանավորների առաջ շուռ էին տվել իրենց գրպանները, իսկ գահի ստվերում, թագավորի ոտքերի մոտ կանգնել էին կերած-խմած, հաստափոր մինիստրները՝ սպասելով նոր պատվի ու պարգևների:

Սպիով կալանավորը երկար ժամանակ դիտում էր ծաղրանկարը:

— Ինչպե՞ս է անունդ, երիտասարդ,— վերջապես ասաց նա:

— Օնորե Դոմյե,— պատասխանեց նկարիչը:

— Լսիր, երիտասարդ, ես համարյա անգրագետ եմ և հազիվ եմ գիր-միր անում: Անկեղծորեն ասած, ես գրքերից ու լրագրերից հեռու կանգնած մարդ եմ: Բայց խոստովանում եմ, որ նկարածներդ շատ հավանեցին ինձ: Մինչև հիմա ես չգիտեի, որ նկարներով կարելի է այդքան բան ասել: Իմ մասին հարցրու նաև ուրիշներից. քեռի Գաստոնին հեշտ չես հուզի: Որքան հիշում եմ, դա ինձ հետ քիչ է պատահել: Մի անգամ, երբ դեռևս փոքր տղա էի, Բաստիլի հրապարակում կանգնած՝ նայում էի նրա մռայլ պատերին ու վանդակապատ պատուհաններին: Պատուհաններից այն կողմ գտնվում էր իմ հայրը: Արև օր էր: Հսկիչը կանգնած էր մռայլ դռան մոտ և հանգիստ նայում էր հուլիսյան պարզ երկնքին: Հանկարծ տեսա, թե ինչպես բոլոր կողմերից ֆրանսիական ապստամբ ժողովուրդը խուժեց Բաստիլի վրա և աչքերիս առաջ ավերեց բանտը: Մի քանի ժամ հետո քարը քարին չմնաց: Այդ օրը երեկոյան հայրս վերադարձավ մեզ մոտ՝ ձեղնահարկ, որտեղ ապրում էինք մենք: Այ դա գո՜րծ էր: Իսկ երրորդ անգամ դա կատարվեց Ռուսաստանում, հենց Մոսկվայում: Այն ժամանակ ես եֆրեյտոր էի միապետական բանակում: Մենք ապրում էինք ռուսական մայրաքաղաքում, և մեզանից յուրաքանչյուրը թոցնում էր այն, ինչ ձեռքն էր ընկնում: Մի անգամ ընկերներով շրջում էինք փողոցներում և նայում Վասիլի Երանելու ոսկե գմբեթին: Այդ

ժամանակ հարյուրավոր հրդեհներ բռնկվեցին: Վառվում էր ամբողջ քաղաքը: Ես հասկացա, որ մենք կորած ենք. բանակը ճմռելու տեղ չուներ: Եվ ես այն քչերից մեկն էի, որ վերադարձա Ռուսաստանից: Կալանավորը մտքերի մեջ ընկավ, ապա ցածրաձայն ավելացրեց,— կարծում եմ, որ երրորդ անգամ ես այդպես հուզվեցի այստեղ, այս ծմակում...

Նա լռեց, ապա ծոցից հանեց գրքի երկտակ ծալած մի կազմ և այնտեղ դրեց փոքրիկ ճեպանկարը:

Ես սա կպահեմ, որպես ամենաթանկ հիշատակը մեր ծանոթությունից,— ավելացրեց քեռի Գաստոնը: Այնպիսի մարդիկ, ինչպիսին դու ես, հազվադեպ են պատահում: Դուցե և արդեն բոլորովին չկան: Դու իսկական մարդ ես: Դու...— Նա փնտրում էր բառեր, որոնք ավելի լավ կարողանային արտահայտել իր միտքը:— Դու սոսկ մարդ չես, դու Ֆրանսիայի խիղճն ես: Քանի դեռ դու այստեղ ես, մենք այդպես կկոչենք քեզ: Ախր ես ճիշտ կռահեցի, չէ՞, ժողովուրդ,— դիմեց նա իր ընկերներին:

— Ճշմարիտ է, Գաստոն: Կեցցե՛ Ֆրանսիայի խիղճը.— պատասխանեցին միաբերան:

Դոմյեն նայեց նրանց և իրեն երջանիկ զգաց այն փայլից, որ նա տեսավ կալանավորների աչքերում, փայլ, որ առաջ է գալիս ճշմարիտ արվեստից:

Եվ նրա գլխում ծագեց մի միտք. «Եթե որևէ տեղ գոյություն ունենար մի արդար երկիր՝ առանց հարուստների ու աղքատների, այս դժբախտները կալանավոր չէին լինի, շատ հավանական է՝ ազնիվ աշխատավորներ: Հիմա աղքատությունը ոչնչացրել է նրանց և նետել այստեղ, իսկ նրանց ուսերի վրա ապրում է այն փոքրամասնությունը, որին ամեն ինչ թույլատրվում է: Բայց երբևէ մարդիկ կփշրեն շղթաները և այն ժամանակ...»

Դոմյեն չավարտեց իր միտքը: Կալանավորներն սկսեցին ապստամբ փարիզցիների մարտական հին երգերից մեկը.



— Ոտքի՛ ել, Փարիզ: Արթնացի՛ր: Դեպի բարիկադնե՛րը:

Նա ձայնակցեց երգողներին, և նրան թվում էր, թե բանտախցում կիսախավարը կամաց-կամաց ցրվում է գալիք օրերի լույսից:

Նա հավատում էր, որ այդ օրերը կգան:





# ԱՆՄԵՂ ԳՈՂՈՒԹՅՈՒՆ

Գերմանացի մեծ կոմպոզիտոր Յոհան-Սեբաստիան Բախը տաս տարեկան էր, երբ զրկվեց ծնողներից: Որբացած Սեբաստիանը և նրանից ընդամենը երեք տարով մեծ Յակոբը տեղափոխվեցին Օրդուֆ քաղաքը, ուր ապրում էր նրանց մեծ եղբայրը, երգեհոնահար և երաժշտության՝ դասատու Յոհան Քրիստոֆ Բախը:

— Կապրեք ինձ մոտ այնքան ժամանակ, մինչև որ կկարողանաք ձեզ համար հաց վաստակել: Դուք պետք է աշխատեք, որ այդ բանը շուտ տեղի ունենա,—ասաց Յոհան-Քրիստոֆը կրտսեր եղբայրներին:

Այդ օրվանից նրանք ապրեցին մեծ եղբոր խնամքի տակ, որը թեև սառնասիրտ մարդ էր, բայց հետևում էր, որ տղաները լավ կրթություն ստանան և տիրապետեն իրենց տոհմական մասնագիտությանը: Իսկ այդ մասնագիտությունը երաժշտությունն էր: Այն ժամանակ ամբողջ Գերմանիայում Բախերը հայտնի էին, որոնք տարբեր քաղաքներում երաժշտության դասատուի, եկեղեցական երգեհոնահարի կամ պալատական երաժշտի պաշտոններ էին կատարում:

Քրիստոֆի մոտ դասեր ստանալով, եղբայրները միաժամանակ սովորում էին տեղական լիցեյում: Յակոբը երաժշտություն շատ էր սիրում, բայց մյուս առարկաներից ետ էր մնում և զարմանում էր Սեբաստիանի վրա, որը ոչ միայն հեշտությամբ էր յուրացնում մաթեմատիկան, լատիներենն ու աստվածաբանությունը, այլև շատ ժամանակ էր հատկացնում դրանց:

— Ի՞նչ է պատահել քեզ,—ասում էր Յակոբը,—ես վաղուց բոլոր դասերս վերջացրել եմ, իսկ դու դեռ նստած ես: Ախր դու ամեն ինչ հեշտությամբ յուրացնում ես:

— Այս խնդիրը մի քանի լուծում ունի,—պատասխանում էր Սեբաստիանը:

— Է՜, քո ի՞նչ գործն է, մեզանից միայն մի լուծում են պահանջում:

— Ինձ համար հետաքրքիր է:

— Խելա՜ռ... Իսկ լատիներե՞նը: Մի՞թե վարժությունը բերանացի անելը քիչ է:

— Իհա՛րկե, քիչ է:

— Բա էլ ի՞նչ է պետք:

— Կարդալ:

— Ինչի՞դ է պետք:

— Այդպես ինձ համար հեշտ է... Ինչքան դժվար, այնքան հեշտ:

«Ինչքան դժվար, այնքան հեշտ»— սա հանելուկ էր մեծ եղբոր համար, իսկ Սեբաստիանը շարունակում էր նույն ջանասիրությամբ պարապել: Իհարկե, նա ամենից շատ պարապում էր երաժշտությամբ. աշխատում էր տիրապետել երաժշտության գաղտնիքներին, սովորել ավելի շատ, նվագել ավելի լավ:

Ամեն անգամ հարադաշնակ* նվագելիս, նա իր դիմաց տեսնում էր նոտաների մեծ պահարանը և այրվում էր հետաքրքրությունից: Տեսնես ի՞նչ կա նրանցում, ի՞նչ խորհրդավոր հնչյուններ են թաքնըված այդ գեղեցիկ կազմերի հետևում: Մեծ էր պատանի Սեբաստիանի հետաքրքրությունը, բայց ավաղ, նոտաները նրա համար շատ էին անմատչելի: Յոհան-Քրիստոֆը շատ պինդ էր փակում պահարանը և բանալիները պահում մոտը: Ոչ ոք պահարանին մոտենալու իրավունք չուներ: Սեբաստիանն ամեն անգամ այնպիսի կարոտով էր նայում գրքերին, որ մի օր Յակոբն ասաց.

— Վերջ ի վերջո դրանք ընդամենը նոտաներ են, ի՞նչ ես քեզ կոտորում: Եթե սիրտ չես անում խընդրելու, մտքիցդ հանիր և վերջ:

Բայց Սեբաստիանը գիտեր, որ խնդրելն ավելորդ է: Դրա համար էլ նա մի քանի անգամ եղբորից թաքուն փորձեց պահարանը բացել: Բան դուրս չեկավ: Վերջապես նրան հաջողվեց ձեռքը հեղքերից ներս մտցնելով, դուրս բերել մի բարակ տետր:

Մեծ եռանդով նա սկսեց արտագրել նոտաները: Արտագրում էր գիշերները՝ լուսնի լույսով:

Ինչքան էլ որ Յակովը արտնջում էր, ինչքան էլ ցավում էին աչքերը, Սեբաստիանը շարունակում էր արտագրել, մինչև լիալուսինն անցնում էր:

Տիկին Քրիստոֆը արդեն նկատել էր նրա աչքերի կարմրությունը: Գուցե և Քրիստոֆն ինքն էլ էր նկատել իր նոտաներից մեկի կորուստը: Եվ ահա մի գիշեր ուրվականի նման անաղմուկ նա հայտնըվեց տղաների սենյակում: Նույնիսկ Յակովը, որ դեռ քնած չէր, չնկատեց նրա մուտքը:

— Ինչպիսի՜ ամոթ,— երկար լռությունից հետո ասաց Յոհան-Քրիստոֆը:— Մեր ցեղը հայտնի է իր երաժիշտներով, բայց երբեք գողեր չի ունեցել:

Նա խլեց տետրակն ու նայեց Սեբաստիանի արտագրած թերթերին:

— Լավ է արտագրված,— ասաց նա,— դրա համար էլ ծեծ չես ուտի: Սակայն քեզ պետք է պատժել, բեբե, բայց պետք է պատժել:

Նա սկսեց արտագրած թերթերը հավաքել:

— Խնդրո՛ւմ եմ, թողեք,— ձեռքերը պարզելով ասաց Սեբաստիանը:

Յակոբն էլ սկսեց խնդրել եղբոր համար: Չէ՞ որ նա տեսել էր, թե ինչքան երկար է տառապել Սեբաստիանը: Սակայն Քրիստոֆը անդրդվելի էր:

— Մ՛ի անհանգստացիր. աշխատանքը երբեք իզուր չի անցնում: Գոնե ձեռագիրդ լավացել է,— ասաց Քրիստոֆն ու դուրս եկավ սենյակից:

— Եվ սա «բեբե» պատիժ է կոչվում,— զայրացած բացականչեց Յակոբը, իսկ Սեբաստիանը լուռ էր:

Նա իրեն մեղավոր չէր զգում:

*) Հարադաշնակը հին ստեղնավոր երաժշտական գործիք է:




ԾՈՎԻԿ ՇԱՂԳԱՄՅԱՆ

Հեռո՜ւ-հեռո՜ւ մի գյուղ կա ծվարած լեռների մեջ: Այդ գյուղում է ապրում փոքրիկ Աստղիկը: Նա ծաղիկներ շատ է սիրում: Ամեն օր սարն է բարձրանում՝ սինձ ու ծաղիկ քաղելու: Մի անգամ Աստղիկը ձորի եզրին մի անծանոթ ծերունու տեսավ: Նա նստել էր լեռ քարի վրա ու նկարում էր: Աստղիկն իջավ սարն ի վար, սուսուփուս մոտեցավ անծանոթին: Դաշտն օրորվեց, թփերը խշշացին նրա ոտքերի տակ: Նկարիչը հանդարտ շրջվեց, ժպտաց, այնքան բարի, այնքան անկեղծ, որ Աստղիկն առանց քաշվելու նստեց նրա կողքին, փափուկ կանաչի վրա, հագուստի լայն փեշը քաշեց մինչև ոտքերը, ծնկներն առավ բազուկների մեջ ու սկսեց ուշադիր զննել... Ծերունին նկարում էր ու զրուցում.

— Քանի՞ տարեկան ես, աղջիկս:

— Շուտով տասը կլրանա:

— Որտեղի՞ց ես գալիս:

— Սարից, ծաղիկ էի քաղում, պապի



ջան, վերցրեք անմոռուկները, ուզո՞ւմ եք գնամ կակաչներ էլ բերեմ:

— Հիմա մենք միասին սարը կբարձրանանք, — տեղից վեր կենալով պատասխանեց ծերունին ու անփութորեն թափ տվեց շորերը, հետո վերցրեց ծաղկեփունջը, հոտ քաշեց ու նորից վերադարձրեց Աստղիկին:

— Մեր սարում սինձ էլ կա, — ասաց աղջիկը:

Ձեռք-ձեռքի տված սարը բարձրացան նկարիչն ու աղջիկը: Նրանք խոսում էին, ծիծաղում... մանկացել էր ծերունին. նա մեկ հրճվում էր՝ թիթեռնիկի նման զվարթ իր ուղեկցուհով, մեկ՝ լեռնային քնքուշ ծաղիկներով:

— Այս կողմ եկ, պապի, կակաչներ կան, — ասաց Աստղիկն ու պոկեց հանդիպած ծաղիկը:

Բայց կակաչը իսկույն թափեց թերթերը:

— Ափսոս, — շշնջաց ծերունին, — խեղճ կակաչ:

— Ոչինչ, պապի ջան, սրանք վերջին կակաչներն են, գարնանն այստեղ շատ կակաչներ են լինում, մեծ—մեծ կակաչներ, ես անպայման կքաղեմ քեզ համար...

Հրաժեշտից առաջ նկարիչ-պապիկը գրեց իր հասցեն ու տվեց Աստղիկին, իսկ աղջիկը չորս տակ ծալած թուղթը ափի մեջ պինդ սեղմած՝ պապիկին ճանապարհեց մինչև գյուղի ծայրը:

Գնաց նա, բայց Աստղիկը միշտ հիշում էր նրան և անհամբերությամբ սպասում առաջին կակաչներին:

Անցավ ցուրտ ձմեռը, գարուն եկավ, կակաչները բացեցին իրենց կարմիր թերթիկները: Կարմիր էր հագել Աստղիկը, կարմիր էր ներկվել սարի լանջը:

Նա զգուշությամբ քաղում ու փնջում էր ծաղիկները:

Աստղիկը փունջը կրծքին սեղմած քաղաք գնաց: Նա անհանգիստ անցնում էր մարդաշատ փողոցներով, ուշադրությունը բևեռած ծաղիկներին... Բայց թառամում էին կակաչները, կծկվում... Մոլորվել էր փոքրիկ աղջիկը. ո՞ւր գնա, ինչպե՞ս գտնի նկարիչ պապիկին:

— Քեռի ջան, քեռի, որտե՞ղ է ապրում այս պապիկը, — հասցեն մեկնելով անցորդներից մեկին, հարցրեց Աստղիկը:

Աղջիկը գնաց ցույց տված ճանապարհով: Նրա ամեն քայլի հետ ընկնում էին վառ կարմիր թերթերը, ներկում գորշագույն մայթը: Քիչ մնաց Աստղիկը հուզմունքից լաց լիներ: Նա տխուր թակեց փայտյա, պարզ դուռը: Շեմքի վրա հայտնվեց պապիկը՝ նույն ժպիտը դեմքին, մազերը թափված ճակատին: Նա ուրախ բարևեց Աստղիկին և ձեռքից բռնելով տարավ տուն:



... Թվում է, թե հեքիաթ է: Աստղիկը զարմացած նայում է կտավներին պատկերված ցուրտ ձմեռներին, արևշող գարուններին, հայրենի գյուղի ծանոթ տեսարաններին:

— Պապի ջան, ափսոս, որ իմ քաղած կակաչները թառամեցին, ես այնպես էի ուզում... — կմկմաց Աստղիկը և ուզում էր լաց լինի, բայց պատի վրա տեսավ կակաչների թարմ փունջը, արցունքների միջից ժպտաց: Աղջիկը մեկ նայում էր սեղանին դրված թառամած փնջին, հատակին ընկնող թույլ ու անզոր թերթիկներին, մեկ՝ արևով ողողված հսկա կակաչներին, որ երբեք չէին թոշնելու:



ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆ

Ծաղիկներ

*Հայաստանի Պետական պատկերասրահ*



ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ԿՈՐՈՎԻՆ

Վարդեր: Երեկո

*Հայաստանի Պետական պատկերասրահ*



19-ՐԴ ԴԱՐԻ ԻՏԱԼԱԿԱՆ ԱՆՀԱՅՏ ՆԿԱՐԻՉ

Զանգակատնով փողոց

*Հայաստանի Պետական պատկերասրահ*



ԳՐՅՈԶ ԺԱՆ ԲԱՏԻՍՏ

Աղջկա գլուխ

*Հայաստանի Պետական պատկերասրահ*

ԼԵԲՐԵՆ ՎԻԺԵ ԵՂԻՍԱԲԵԹ

Մենշիկովան իր որդու հետ

*Հայաստանի Պետական պատկերասրահ*




Դուք, անշուշտ, տեսած կլինեք, թե նկարիչն ինչպես է աշխատում. քսում է ներկը կտավին, հետ քաշվում, դիտում, ապա նորից մոտենում, լրացնում թերին, կրկին հեռանում ու ստուգում արածը: Ստեղծագործման պահին այսպես ինքն իրեն ստուգում է նաև ճարտարապետը, քանդակագործը, գրողը:

Մինչդեռ կոմպոզիտորը, որ սիմֆոնիկ երկ է գրում, զրկված է այդ հնարավորությունից: Նրա երկը ստուգվում է միայն՝ երբ կատարվում է նվագախմբի կողմից: Ահա այս դժվարությունը հաղթահարելու և հնչյունների ներդաշնակության նոր հնարավորություններ ստեղծելու նպատակով ինժեներ Ե. Մուրզինը հնարել է մի նոր ապարատ, որ կոչվում է ԱՆՍ:

«ԱՆՍ-ի վրա կոմպոզիտորը կարող է և գրել երաժշտությունը և միաժամանակ լսել այն ու շտկել ցանկացած տեղը: ԱՆՍ-ի միջոցով կարելի է գրել ու վերարտադրել և՛ ջութակի, և՛ դաշնամուրի, և՛ ամբողջ նվագախմբի, և նույնիսկ մարդկային ձայնի ու խոսակցության հնչյունները:

Բայց մի՞թե ԱՆՍ-ի հանդես գալով ավելորդ կդառնան երաժշտական գործիքներն ու երգչի ձայնը:

Ոչ. թեև ԱՆՍ-ը կարող է արտադրել այդ ձայները, բայց դա կարող է ունենալ միայն հետազոտական նշանակություն: Արհեստականը երբեք չի կարող փոխարինել բնական ձայնին: Մուրզինի նախորդները, որոնք նույնպես երկար տարիներ տքնաջան աշխատել են այդ սարքի ստեղծման ուղղությամբ, փորձում էին գրել և վերարտադրել դասական կոմպոզիտորների սիմֆոնիկ երկերը նման սինթեզատորի վրա: Ապարդյուն և անմիտ ջանք, որովհետև դա նույնն էր, ինչ որ Ռեմբրանդտի կամ Այվազովսկու նկարները այլ գույներով արտանկարված:

ԱՆՍ-ի հիմնական խնդիրը նոր, գեղեցիկ երկեր ստեղծելն է նրա հնարավորությունների սահմաններում: Իսկ այդ սահմանները շատ լայն են, այնքան, որքան չի ունեցել դեռևս ոչ մի երաժշտական գործիք կամ նվագախումբ:



ժամանակակից երաժշտական սիստեմի 12 օկտավի փոխարեն ԱՆՍ-ը ունի 72-ը, որոնց շնորհիվ հնարավոր է ստեղծել հնչյունների ամենանուրբ համակցություններ և «նոտագրել» այնպիսի ստեղծագործություններ (հատկապես ժողովրդական), որոնք մինչև այժմ հնարավոր չէր գրել այսօրվա նոտաներով:

Ռուս մեծ կոմպոզիտոր Սկրյաբինը, որի անվան սկզբնատառերով է կոչվում նորագույն գործիքը՝ ԱՆՍ (Ալեքսանդր Նիկոլաևիչ Սկրյաբին), տարիներ շարունակ երազում էր ունենալ այդպիսի մի նվագարան՝ վերարտադրելու համար այն նուրբ ու բնական հնչյունները, որ ինքը զգում, լսում էր հոգով, բայց չէր կարողանում մարմնավորել որևէ կերպ: Նրան չվիճակվեց իրականացած տեսնել իր երազանքը:

Այժմ մի քանի խոսք ԱՆՍ-ի կառուցվածքի և աշխատանքի մասին:

Դուք երևի նկատած կլինեք, որ կինոժապավենի վրա կադրերի և եզրաճեղքերի միջով անցնում է զիգզագաձև մուգ մի շերտ: Դա է, որ կինոնկարը հնչյուն է դարձնում: Մուրզինը իր գյուտը հղացել է այդ ստվերագծերի ուսումնասիրությունից: «Եթե հնարավոր է,— մտածել է գյուտարարը,— այդ ստվերագծերով գրել և վերարտադրել ցանկացած ձայնը, ապա ինչո՞ւ չի կարելի նաև արհեստականորեն նկարել նման ստվերագծեր և վերարտադրել»:

Դժվարը հենց այդ խրթին «ալբոմբենի» ընթեռնումն էր, որից հետո սկսվեց մեքենայի կա-

ուցման երկարատև աշխատանքները:

*Մուրզինի ապարատի ամենակարևոր մասը ապակե սկավառակներն են, որոնց վրա շատ մանր խազեր է քաշված: Այդ սկավառակը պտտվում է ապարատի երկայնքով անցնող ճեղքի տակ, առաջանում է լույսի թրթռումներ, ձախ կողմում՝ վայրկյանում 40 անգամ հաճախականությամբ, աջ կողմում՝ 11000: Ճեղքը ծածկված է անթափանց (ներկված) ժապավենով, որի վրա կոմպոզիտորը գրում է ձայնագծերը: Ժապավենի վրա դրվում է ֆոտոէլեմենտ՝ միացված բարձրախոսի հետ: Երբ շարժվում է ժապավենը, հնչյունները վերարտադրվում են ըստ ձայնագծերի, ինչպես կինոժապավենի հետ է կատարվում հնչյունները վերարտադրելիս:*



*ԱՆՍ-ը հիանալի ընդունելություն է գտել. կոմպոզիտոր Նիկոլսկին գրել է մի երկ, որ կոչվում է «Ֆանտազիա ռուսական թեմաներով»: Այդ երկը ԱՆՍ-ի վրա կատարվում է չտեսնված գեղեցկությամբ:*

**Գիտե՞ք որ...**

*Մի շարք աշխարհահռչակ կոմպոզիտորների ծնողները այլ հույսեր էին կապել իրենց որդիների բախտի հետ: Ըստ նրանց, Բեռլիոզը պետք է բժիշկ լիներ, Կյուին՝ ինժեներ, Դվորժակը՝ մսագործ, Շումանը, Տարտինին և Չայկովսկին՝ փիլիսոփա: Բայց բոլորի մոտ էլ երաժշտության նկատմամբ անհագ սերը հաղթեց:*

## ՍՏՈՐՋՐՅԱ ՆԿԱՐԻՉԸ



Տարեցարի մարդկությունը ավելի հիմնավորապես է «բնակեցնում» ծովի խորքերին: Ստորջրյա տուրիստների, որսորդների և լուսանկարիչների հետքերով, գեղանկարիչները նույնպես հայտնվեցին ծովի հատակում:

Այս լուսանկարում դուք տեսնում եք նրանցից մեկին: Նա նկարում է Միջերկրական ծովի հատակը: Այնտեղ աշխատելու համար նախապես պատրաստված են հատուկ ներկեր, իսկ ծանր մոլբերտը «դրված է խարսխի վրա»: Ջրսուզակի թեթև հագուստը հնարավորություն է տալիս համեմատաբար երկար աշխատել՝ մինչև 10 մետր խորությամբ ջրի տակ:

## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԲԱՌԱՐԱՆ

Ա լ լ ե գ ր ո.— իտալերեն ալլեգրո նշանակում է աշխույժ, արագ: Երաժշտության մեջ այդպես է կոչվում արագ տեմպը, որն արտահայտում է զվարթ տրամադրություն. ասես թե հնչյունները հևասպառ վազում են իրար հետևից, թափով, եռանդուն: Կոմպոզիտորը արագ տեմպով արտահայտում է ոգեշունչ, ուրախ, երբեմն նաև հաղթական տրամադրություն: Ալլեգրո տեմպը արտահայտում է նաև լարված, խառնաշփոթ վիճակ. նայած թե կոմպոզիտորը հնչյունների ինչպիսի կոմբինացիա է կատարում: Ալլեգրո է կոչվում նաև երաժշտական այն ստեղծագործությունը կամ նրա մի մասը, որ կատարվում է արագ տեմպով: Այդ տեմպով գրվում են սովորաբար պիեսի, սիմֆոնիայի կամ պոեմի առաջին մասերը, երբեմն նաև՝ մյուս մասերը:

Ա ն դ ա ն տ ե.— սա նույնպես ծագել է իտալերեն բառից, որը նշանակում է ընթացող, հոսող: Երաժշտության մեջ անդանտե է կոչվում միջին տեմպը, երբ հնչյունները կարծես թե ընթանում են առույգ քայլվածքով, առանց շտապելու: Այս տեմպով գրված երաժշտությունը արտահայտում է նամեմատաբար հանգիստ հոգեվիճակ: Անդանտե է կոչվում նաև երաժշտական այն ստեղծագործությունը, որ գրված է միջին տեմպով և հեղինակի կողմից չի ստացել առանձին անվանում: Անդանտեն ունի նաև մի այլ իմաստ: Օրինակ, երբ ասում են՝ «Անդանտե այսինչ սիմֆոնիայից» դրա տակ հասկանում են տվյալ ստեղծագործության միջին տեմպով գրված հատվածները:

Ա դ ա ժ ի ո.— իտալերեն նշանակում է դանդաղ, հանդարտ: Ադաժիոն երաժշտական ստեղծագործության այն տեմպն է, երբ հնչյունները ասես թե մեղմաքայլ ու հանդարտ են ընթանում: Ադաժիոն հիմնականում արտահայտում է երազուն, թախծոտ, երբեմն՝ խոհուն տրամադրություն, մի տեսակ նախապատրաստական, խմորվող հոգեվիճակ: Ադաժիո է կոչվում նաև այն ստեղծագործությունը, որը գրված է տվյալ տեմպով, բայց առանձին անվանում չունի:

# ՊԵՐՈՎԻ ԱՐՎԵՍՏԱՆՈՑՈՒՄ

*Մի անգամ ռուս ականավոր նկարիչ Վ. Գ. Պեռովի արվեստանոցը մտավ հնամաշ հագուստով մի գեղջկուհի և կանգնելով դռան մոտ, սկսեց մեծ ուշադրությամբ դիտել պատերին կախված նկարները: Կարծես ինչ-որ բան էր որոնում: Երբ վերջացրեց, աղերսական հայացքով նայեց նկարչին: Գեղջկուհին հոգնած էր, վշտադեմ: Նա մի ձեռքով բռնել էր գույնզգույն պուտերով չթե կապոց, իսկ մյուսում ինչ-որ բան էր սեղմել:*

*Պերովը խուզարկու հայացքով հետևում էր կնոջը. թվում էր՝ մի տեղ տեսել է նրան: Բայց որտե՞ղ: Եվ հանկարծ ինչպես նոսրացող մշուշ, նկարչի երևակայության մեջ վերականգնվեց մի դեպք:*

*Տարիներ առաջ էր. երբ նկարում էր իր հանրահայտ «Եռյակ» պատկերը, որը ռուսական կերպարվեստի նշանավոր կտավների հետ միասին, այժմ գտնվում է Մոսկվայի Տրետյակովյան պատկերասրահում:*

*... Խստաշունչ ձմեռ է: Մոսկովյան անշուք փողոցներից մեկում երեք երեխաներ անասելի դժվարությամբ քաշում են ջրով լի հսկայական տակառով բեռնավորված սահնակը: Նրանք հոգնել են: Ցուրտ քամին անողորմաբար ծեծում է նրանց նիհար ու կապտած դեմքերը: Ինչքա՜ն լավ կլինեն, եթե նստած լինեին տաք վառարանի մոտ, սիրելի ծնողների գուրգուրանքով շրջապատված: Բայց ի՞նչ արած, պետք է մի կերպ դիմադրել կյանքի դաժանություններին... ու ձգում են: Նրանք ցարական Ռուսաստանում ապրող այն հազարավոր երեխաներից էին, որոնց ծնողները ստիպված՝ ծառայության էին տալիս որևէ արհեստավորի մոտ:*



ՊԵՐՈՎ ԵՌՅԱԿ

*«Եռյակ» պատկերը նկարելու համար Պերովը անընդհատ շրջագայում էր փողոցներում, մտնում քաղաքի արհեստանոցները, ուսումնասիրում երեխաների կյանքը, նրանցից ընտրում համապատասխան տիպեր՝ իր հերոսներին մարմնավորելու համար: Երկու կողմերից քաշող երեխաներին նա արդեն նկարել էր բնականից, իսկ մեջտեղի երեխայի համար, որին երևակայությամբ պատկերացնում էր, դեռևս ուզած տիպը չէր գտել: Որոնում էր: Եվ ահա մի օր Մոսկվայի Տվերսկի փողոցում տեսավ մոր հետ քայլող մի գյուղացի տղայի: Իսկ և իսկ իր պատկերացրած կերպարն էր: Եվ նկարիչը շտապով մոտեցավ նրանց, հայտնեց իր խնդիրքը՝ նկարել տղային: Նկարչությունից ոչինչ չհասկացող գեղջկուհին վարանեց և միայն Պերովի բացատրություններից հետո համոզվեց՝ զույգ հետաքրքրությունի՞ց դրդված, ով գիտե: Նկարիչը տարավ նրանց իր արվեստանոցը և անմիջապես սկսեց աշխատել: Մի փոքր հեռվից մայրը զարմանքով դիտում էր, թե ինչպես է այդ մարդը վրձնի շարժումներով կտավին դրոշմում որդու դիմագծերը:*

*Պերովը վերջացրեց աշխատանքը, հյուրասիրեց նրանց, շնորհակալություն հայտնեց ու ճանապարհեց:*

*... Այժմ նույն կինն, որ անճանաչելիորեն փոխվել էր, ծերացել, նորից իր արվեստանոցում է:*

*«Ինչն է նրան բերել այստեղ,— մտածում էր արվեստագետը ու հարցական նայում կնոջը»:*

*Զգալով այդ, մայրը պատմեց բոլորը: Մի քանի տարի առաջ երբ Մոսկվա էր եկել, որպեսզի որդուն աշկերտ տա մի վարպետի մոտ: Ահա այդ ժամանակ էր, որ իրենք հանդիպեցին պատահաբար, և Պերովը նկարեց որդուն: Վարպետը դաժան մարդ լինելով ծեծել, օրերով քաղցած էր թողել տղային: Փոքրիկը չէր դիմացել, հիվանդացել էր և մեռել: Դժբախտ կինը թաղել էր որդուն ու վերադարձել գյուղ: Սակայն չէր կարողացել ապրել առանց իր միակ զավակի, վաճառել էր իր ամբողջ ունեցածը և ոտքով հասել Մոսկվա՝ նկարչից խնդրելու այն պատկերը, որտեղ իր որդին կենդանի էր:*

*— Տվեք ինձ իմ որդուն,— այս ասելով, կինը Պերովին մեկնեց վաճառքից ստացած դրամը և սկսեց աղիկտուր լալ:*

*Նկարիչը խիստ հուզված էր և չգիտեր ի՞նչ աներ: Չէ՞ որ «Եռյակը» իրենը չէր պատկանում: Այն գնել էր և իր պատկերասրահում կախել Տրետյակովը: Արցունքներ հոսեցին նաև նկարչի աչքերից:*

*Իմանալով եղելությունը, կինը դուրս եկավ տնից ու գնաց՝ գույն կորցրած որդուն պատկերասրահում որոնելու...*

Վ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

# Բրուտի արվեստը



Հազարամյակներ շարունակ սովորական յուղոտ կավը անխարդախ ու մեծ ծառայություններ է մատուցել մարդուն, բավարարելով նրա կենցաղային կարիքները և պատճառելով գեղարվեստական հաճույք: Կավը հունցելով ու մշակելով, ձևեր հաղորդելով նրան, ապա նաև թրծելով բարկ կրակի մեջ, կավագործությամբ զբաղվողները պատրաստել են բազմատեսակ իրեր, գործիքներ:

Երբ աշխարհում դեռևս գոյություն չունեին մագաղաթն ու թուղթը, մարդիկ, կավե աղյուսների վրա փորագրելով ժամանակի դեպքերն ու պատմությունները, գրքեր են կազմել և հիմնել իսկական գրադարաններ: Շատ հին ժամանակներից քանդակագործները կավից կերտել են արձաններ ու արձանիկներ: Շինարարները կավից տներ են պատրաստել, բարձրացրել, կառուցել ջրմուղներ, ծածկել կտուրներ և գմբեթներ: Կավագործ հմուտ վարպետները կավից ձուլել են բազմագույն ապակիներ, կրակի մեջ թրծել կավե երաժշտական հին մի գործիք՝ փողը և այդ ավանդական փողի զանգատավոր, թավ ձայներով արտաբերել քաղցրալուր ելևէջներ:

Հնագույն դարերից հայերը «բրուտի արվեստ» են կոչել կավագործությունը և «արվեստավոր բրուտ» անվանել նրանով զբաղվող վարպետներին: Այդ մի ծանր, բայց իսկապես գեղեցիկ արհեստ էր, արվեստի աստիճանի հասած բարդ մի աշխատանք:

Ամբողջ օրը կիսամութ ու խոնավ բրուտանոցում, գետնամեջ չարխի առջև նստած, բրուտը ձև էր տալիս կավե թթված խմորին: Նրա ճկուն մատների տակ թաց կավի զանգվածը դառնում էր ահագին կարաս, բռան մեջ տեղավորվող նրբատեսք սրվակ կամ երկարավիզ սափոր, կամ բարձրաեզրից, հաստաշուրթ քրեղան: Հետո նա զանազան մետաղների ժանգերից ներկ էր պատրաստում, ծածկում արդեն ձևավորված ամանի մեջն ու դուրսը այդ ծորուն ներկերով և այնպես էր թրծում հատուկ հնոցում, որպեսզի ամուր լինի ամանը, չկորցնի ոչ տեսքը, ոչ ներկն ու զարդը:

Այն հեռավոր դարերում հեշտ չէր այս ամենը գլուխ բերել վարպետությամբ: Սակայն բրուտը կարողանում էր իր գեղեցիկ արվեստի կնիքը դնել կավախեցու վրա և ուրախացնել մարդկանց:

Պարող աղջիկների նման նազամարմին սափորներ էին ստացվում նրա մատների տակ, ուռած ու փքված գոռոզ կճուճներ՝ լայնականջ կանթերով, բաց-բերան գինեփարչեր կամ ձեթի ճրագներ, որ նման էին աշխարհին լույս բերող ձեռքի ափերի: Կամ երբ արվեստավորը բրուտը միտք էր անում ծաղկավորող գարնան և պտղավորող ամռան մասին, նա գունավորում էր իր կավե պնակներն ու սափորները բնության կենդանի ներկերով, ծաղկազարդերով էր ծածկում նրանց ողորկ երեսները, մեջքը պատում այծաշար գոտիկով ու թռչունների շարքով...

Նա կարողանում էր գինու գավերին այնպիսի հնարամիտ վիզ ու կոկորդ տալ, որ գավաթները լցնելիս՝ կլկլոցը հիշեցներ որևէ երաժշտական եղանակ: Իր կավե մանրիկ ապամաններին նա տալիս էր լայներախ գազանների տեսք, նորաբաց բողբոջների նման ձևավորում անուշահոտ յուղերի մեծ ու փոքր սրվակները: Կամ նույն կավից շինում էր գունագեղ ուլունքներ, մատանու քար, շողշողուն ապարանջան:

Սովորական կավից ինչեր ասես չէր թրծում բրուտը. խնոցի ու թոնիր, իլիկների գլխիկներ և ծածկի կղմինդր, հացի և ալյուրի, չոր մրգի ու թթու բանջարեղենի պահոցներ...



II

Հին արվեստ է բրուտագործությունը, Հայաստանում շատ տարածված, Հայաստանում արտադրված կավե ու հախճապակե ամանեղենը, աշխարհում շատ հայտնի է: Արևելքի երկըրներում հռչակավոր էր կարմրավուն մի կավ, որին օտարները «հայ կավ» են կոչել: Հայ բըրուտների պատրաստած ամանեղենն ու ապսեղենը՝ ինչպես վկայում է արաբ մի հարկագիր, աշխարհի բոլոր շուկաներում ամենաթանկն էին, ամենից ցանկալին:

Վարպետ բրուտների պատրաստած այդ ամաններն ու իրերը



III

հիմա էլ կարելի է տեսնել ամեն քայլափոխի: Եվ ոչ միայն թանգարաններում: Նրանք ցրված են մեր երկրի բոլոր անկյուններում՝ գետնի երես, թե գետնի տակ, ամբողջական, ասես հենց նոր են հանել հնոցից, կամ մանրիկ անթիվ-անհամար կավախեցիների տեսքով:

Եվ եթե դու այսօր էլ շրջես մեր հազարամյա, սակայն ավեր բնակատեղիներում, եթե ուշադրությամբ աչք ածես շուրջ բոլորդ, անպայման կտեսնես կավե այդ ամանների բազմաթիվ մանր կտորներ: Բարձրացրու գետնից, լավ նայիր. նրանց տեսքն ու երանգը կգրավեն ու կհետաքրքրեն քեզ:

Եթե որոնես, դու կգտնես նրբակերտ, շատ բարակպատ, համարյա փխրուն սև կավախեցիներ և խեցիներ, որ մուգ կարմրավուն են, ինչպես կրակի անդրադարձումը պղնձի վրա: Նրանք կլինեն նաև աններկ, երբեմն տեղ-տեղ գունավորված ծխով, կամ այլերանգ կավի բարակ շերտով: Դրանք չեն փայլում, սակայն հաճախ այնպիսի զարդահետքեր են կրում իրենց նվազ մակերեսին, որ ավելի շատ բան են ասում բրուտի ճաշակավոր ու գեղեցիկ արվեստի մասին, քան կարող են ասել այս տողերը:



IV

Դու կհանդիպես նաև, և ավելի շատ, ուրախատեսք կավախեցիների: Նրանց վրայի՝ մետաղե ժանգերից շինված ներկը քեզ կհիշեցնի ապակու բարակ շերտը: Այդ ներկաշերտը, որին հին հայերը կոչել են «ապակի», այսինքն՝ «ապակի», իսկ հիմա՝ «ջնարակ», շողշողում է ծիածանի բոլոր զարմանալի երանգներով: Երբ թվում է, թե մեր լեռնաստանի երկնքի կապույտ շողքշառավիղն է խաղում ջնարակված խեցիների վրա, երբ սարալանջերի զմրուխտ կանաչը, թվում է՝ կրակվում են հասուն բալի անթափանց կարմիրը և նռան հատի թափանցիկը: Դու կտեսնես ջնարակված խեցիներ և կուրախանաս, որ այդպես միմյանց են հյուսվել անբիծ լազուրն ու նարինջի ոսկեդեղինը, գինու բոցեղեն բոսորը և մանուշակի հանգստացնող մգությունը: Եվ սրանց տակ, հաճախ, կերևան այլ ներկով արված զարդերի հետքեր...



VI

Կլինեն խեցիներ, որոնց ողորկ երեսներին, հենց ջնարակով, նկարված են գազանների, կենդանիների, թռչունների ու բույսերի, նույնիսկ մարդկանց պատկերներ: Այդ պատկերները, իհարկե ամբողջական չեն, քանի որ կավախեցիներն էլ միայն բեկորներն են մի ժամանակվա ամբողջական սպասների:

Եվ ապա կհանդիպես հաճախ մթնատեսք, ժամանակի փոշով ծածկված ու առաջին հայացքից ոչ մի բանով չհրապուրող կավախեցիների: Սակայն բավական է, որ մաքրեն նրանց վրայի փոշին, և կհայտնվեն ծիածանի նույն ուրախ երանգները, նույն գրավիչ զարդերը և պատկերների մնացորդները:

Դու կարող ես գտնել այնպիսի խեցիներ, որոնք կրեն ափսե կամ սափոր պատվիրողի, երբեմն էլ իրեն՝ բրուտ վարպետի անվան տառերից մի երկուսը: Կարող են պատահել արաբերեն կամ պարսկերեն, ասորերեն կամ արևելյան այլ լեզուների տառանիշեր: Հաճախ դրանք ևս հնարավոր է կարդալ: Այդ դեպքում հասկանալի է դառնում, որ հայ բրուտն ամաններ է թրծել Հայաստանում ապրող օտարազգիների, կամ օտարների նիստ ու կացին կապկող հայ իշխանների ու մեծատուններին համար:



Սակայն օտարագիր և օտարազարդ խեցիների մի մասն էլ վկայում է, որ հարևան երկրներից Հայաստան վաճառքի է բերվել նաև այլազգի բրուտների պատրաստած արտադրանքը:

Հասարակ, աշխատավոր ժողովրդի համար պատրաստված սպասեղենը, եթե գիր էլ ունի, միայն հայերեն է, մայրենի լեզվով...

Հետո դու կարող ես գնալ պատմության թանգարան՝ տեսնելու կավե սպասեղենի և ամանների այն հարուստ հավաքածուն, որ կուտակվել է բրու-

1. Թաշնագործ կճուճ (գունազարդ), XVI—XV դար մ.թ.ա.
2. Գինու կարաս, VII դար մ.թ.ա. (Կարմիր բլուր)
3. Ջրամանը՝ ջնարակած, XIII—XII դար մ.թ.ա. (Դվին)
4. Սրճի կճուճ — գործ՝ Դ. Դանիելյանի (1960 թ.)
5. Դեկորատիվներ՝ ջնարակած — գործ՝ Հ. Սիմոնյանի (1960 թ.)
6. Սափոր — գործ՝ Հ. Բեկյանի (1960 թ.)

Լուսանկարները՝ ԶՈՒՆԻԿ ՍԱՐԳՍՅԱՆԻ և ԱՆԴՐԱՆԻԿ ՔՈՉԱՐԻ

տագործական խոշոր կենտրոններ՝ Անիի, Դվինի, Գառնիի և հին Հայաստանի շատ ու շատ վայրերում կատարված պեղումների շնորհիվ: Քեզ այնտեղ կհիացնեն հայ բրուտների ստեղծած ամանները իրենց հնարամիտ ձևերով, գույն ու երանգով: Դու կիմանաս, թե ինչպիսի գույներ ու ձևեր էին սիրում անեցիները, դվինեցիները, քո հավաքածուի մեջ կգտնես այդ քաղաքների վարպետների պատրաստած բազմաթիվ նմուշներ:

Դու կարող ես միաժամանակ մեկնել ուղղակի Դվին, Գառնի կամ Կարմիր բլուրի ուրարտական ամրոցը, որտեղ հնեաբան-պատմաբանները հիմա էլ շարունակում են արևերես հանել քո երկրի անցյալ կյանքի և կուլտուրայի մասին խոսք ասող բազմաթիվ իրեր ու կավե ամաններ: Եվ հենց այնտեղ էլ, գետնի երեսին շեղ անցած հարյուրավոր նոր կավախեցիներ կգտնես և կլրացնես բրուտագործական քո հավաքածուն:

Որքան մեծանա խեցիների քո հավաքածուն, դառնա բազմատեսակ ու բազմագույն, այնքան դու շատ բան կիմանաս ուրույն ու հետաքրքրական, թերևս աշխարհի ամենահնագույն արվեստի՝ բրուտագործության մասին:

Գեղեցիկ արվեստ է բրուտի արվեստը: Այդ մասին քիչ է կարդալը, նույնիսկ քիչ է նրա պատմությունն իմանալը: Գեղեցիկը պետք է տեսնել, գեղեցիկով շրջապատել մեր կյանքն ու կենցաղը: Այստեղ արդեն քեզ կօգնի նաև կավախեցիների քո հետաքրքրական հավաքածուն:



Նկարները հեղինակի

# ԱՅԳԵԿՑՈՒ ԽՈՐՀՈՒՐԴԸ

Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆ

Իշխանական ամրոցի փառահեղ դահլիճում, բավշյա ոսկեկար բարձերին հենված՝ նստել էր ծեր իշխանը և լուռ մտածում էր: Բոլորել էր նա իր կյանքի չորրորդ քառասնամյակը, և ծերության հետ միաժամանակ նրա սիրտն էր սողոսկել մի մեծ մտատանջություն: Նա չգիտեր, թե երեք որդիներից որին ժառանգեր իշխանությունը, քանզի նրանց մեջ չկար ավագ ու կրտսեր. նրանք մի օրվա ծնունդ էին:

Իշխանն այդ մտքերը գաղտնի էր պահում գավակներից: Այդ մասին գիտեր միայն իր մտերիմ սենեկապետը:

— Տեր իշխան, — մի օր ասաց սենեկապետը, խախտելով ծանր լռությունը, — հրաման տուր ծառայիդ՝ խոսել:

Իշխանը հայացքը բարձրացրեց նրա վրա ու հազիվ լսելի շշնջաց.

— Խոսիր:

Սենեկապետը մի քայլ առաջ եկավ ու ասաց.

— Տեր իշխան, կանչել տուր Վարդան Այգեկցուն, և նա քեզ ճշմարիտ խորհուրդ կտա:

Վեր թռավ տեղից իշխանը: Բոցավառվեցին նրա խունացած աչքերը:

— Վարդան Այգեկցո՞ւն, — գոչեց նա: — Այն քարոզչի՞ն, որ իր առակներով ծաղրում է մեծահարուստ իշխաններին, գող ու ավազակներ անվանում մեզ:

Սենեկապետը, որ խելոք մարդ էր, ասաց.

— Ով մեծ իշխան, քո իրավունքն է, և դու կարող ես չսիրել Այգեկցուն: Բայց նա իմաստուն մարդ է, և նրա խորհուրդն էլ կլինի իմաստուն: Լսիր քո խոնարհ ծառային, տեր իշխան, փորձիր...

Վերջապես զիջեց իշխանը.

— Մարդիկ ուղարկիր, — հրամայեց նա, — թող իմ անունից Այգեկցուն հրավիրեն այստեղ:

* * *

Մեծ մայրաքաղաքից ոչ հեռու գտնվող նոչակավոր Դրազարկ վանքում էր ապրում ու աշխատում Վարդան Այգեկցին: Նա գրում էր ճառեր ու առակներ: Քարոզում էր բարություն, ազնվություն և արդարություն, ծաղրում չարությունը, անարդարությունը: Հայտնի էր նրա

իմաստության նշանը ամենուր:

Իշխանի մարդիկ մի ցերեկ ու մի գիշեր ճանապարհ կտրելով հասան Դրազարկ ու նորից անցնելով մի գիշեր ու մի ցերեկ, ետ վերադարձան՝ իրենց հետ բերելով Այգեկցուն: Իշխանը առերևույթ սիրալիր դիմավորեց նրան ու ասաց.

— Ուսուցիչ, ինչքան էլ տեսնում ես, որ ծեր եմ ես ու հիվանդ, և մահս էլ հեռու չէ: Բայց չեմ կարողանում իմ երեք զավակներից արժանավորին ընտրել՝ իշխանությունս ժառանգելու համար: Օգնիր ինձ:

Լուռ մնաց Այգեկցին մի պահ, ապա պատասխանեց.

— Լավ, իշխան, ես կօգնեմ քեզ: Բայց մինչ այդ ես պիտի տեսնեմ քո զավակներին առանձին-առանձին և մի հարց առաջարկեմ նրանց:

Իշխանը համաձայնեց: Ամրոցում մի սենյակ պատրաստեցին Այգեկցու համար ու նրա մոտ հրավիրեցին իշխանազուններից մեկին:

— Իշխանազուն,— դիմեց նրան Այգեկցին,— եթե դու մարդ ծնվելու փոխարեն որևէ գազան, կենդանի կամ թռչուն ծնվեիր, որը կցանկանայիր նրանցից:

— Եթե ես մարդ չծնվեի, կցանկանայի առյուծ ծնվել, որովհետև նա է գազանների իշխանը և հոշոտում է բոլորին,— պատասխանեց իշխանազնը:

Այգեկցին պատվիրեց նրան սև հանդերձ հագնել և սպասել իշխանի մոտ՝ դահլիճում: Ապա նա հրավիրեց իշխանի երկրորդ որդուն ու նրան տվեց նույն հարցը:

— Ես կցանկանայի արծիվ ծնվել,— պատասխանեց երկրորդ իշխանազունը,— որովհետև նա է թռչունների արքան, հոշոտում է ամենքին և գտնվում է բոլորից բարձր: Այգեկցին պատվիրեց նրան հագնել կարմիր զգեստ ու սպասել իշխանի մոտ՝ դահլիճում: Ապա նա խնդրեց իր մոտ հրավիրել երրորդ իշխանազնին ու նրան առաջարկեց նույն հարցը:

— Եթե ես մարդ չծնվեի,— ասաց իշխանազունը,— կցանկանայի աղավնի ծնվել, որ անմեղ է, խաղաղ և երբեք մենակ չի թռչում:

Այգեկցին պատվիրեց նրան սպիտակ հանդերձ հագնել ու սպասել իշխանական դահլիճում:

Որոշ ժամանակ անց, Այգեկցին գնաց իշխանի մոտ:

— Դե խոսիր, ուսուցիչ,— անհամբեր ասաց իշխանը:

Այգեկցին մոտեցավ:

— Իշխան,— ասաց նա,— եթե քեզ ժառանգորդ ընտրես, ահա այս որդուդ, որ սև է հագած, նա ժողովրդի համար մի գիշատիչ կլինի: Եթե ընտրես այս մյուս որդուդ, որ կարմիր է հագած, նա էլ կլինի գիշատիչ, միայն ավելի զոռոզ: Իսկ եթե իշխանությունդ ժառանգես ահա այս որդուդ, որ սպիտակ է հագած, խաղաղություն կլինի երկրում ու գոհ կմնա ժողովուրդը:

Այսպես խոսեց մեծ առակախոս Վարդան Այգեկցին, գլուխ տվեց ու դուրս եկավ իշխանական դահլիճից:





ԶՎԱՐԹՆՈՑԻ ՈՒՂԵՑՈՒՅՑ ԿՈԹՈՂԸ

Գործ՝ ԵՐՎԱՆԴ ՔՈՉԱՐԻ և ՌԱՖԱՅԵԼ ԻՍՐԱՅԵԼՅԱՆԻ

# ՏԱՐԱՍ ՇԵՎՉԵՆԿՈ



## ԿՏԱԿ

*ՏԱՐԱՍ ՇԵՎՉԵՆԿՈ*

Երբ մեռնեմ ես, թաղեցեք ինձ
Մեր Ուկրաինայում,
Մի բարձրաբերձ բլրի վրա,
Արձակ տափաստանում.
Որ արտերը, Դնեպրը լայն,
Եվ ափերը ժայռոտ
Երևան ինձ, լսեմ գետի
Ճառաչյուն ու որոտ:

Ուկրաինայից երբ տանի նա
Դեպի ծովը կապույտ
Ոսոխների արյունն, այնժամ
Դաշտերը, սարերը լայն
Կթողնեմ ես, կսլանամ
Երկինք՝ աստծու մոտ այն
Աղոթելու: Իսկ մինչ այդ ես
Չեմ ճանաչում նրան:

Թաղեցեք ու ելեք ոտքի,
Շղթաները կտրե՛ք,
Եվ թշնամու չար արյունով
Ազատություն ցողե՛ք:
Եվ ինձ այդ մեծ ընտանիքում,
Ե՛վ ազատված, և՛ նոր,
Մի՛ մոռացեք, հիշեցե՛ք ինձ
Խոսքով անչար, անդորր...

# ԿԱՐՄԻՐ ԾԱՂԻԿՆԵՐ

ՄԻԽԱՅԼ ՌՈՒԲԱՇՈՎ

Նկ. ՎՈԼՈԴՅԱ ՍԱՎԱԴՅԱՆԻ

Դանդաղ հալվում էր ձյունը։ Շրջապատը աշխույժ էր, ուրախ։ Մարտ ամսվա վերջին օրերն էին, արևոտ ու հրապուրիչ։ Արևի ճառագայթներն ընկնելով դասարանի պատին՝ լուսավորել էին Շևչենկոյի նկարը։

Ուսուցիչ Յակով Դենիսովիչը պատմում էր Շևչենկոյի «Կոբզարի» մասին։ Նրա սրտագին խոսքերը հասնում էին մինչև երեխաների հոգու խորքը։

Իլկո Դովգալը լսում էր շունչը պահած ու նայում Տարաս Գրիգորևիչի նկարին։ Բանաստեղծի աչքերում և՛ տխրություն կար, և՛ խստություն։ Իսկ բեղերի տակ հայրական բարի ու մեղմ ժպիտ։

— Դա ճի՞շտ է, որ Տարաս Շևչենկոն ապրել է մեր փողոցում,—հարցրեց Դովգալը։

— Հենց այդ մասին է, որ ուզում եմ ձեզ պատմել,— և ուսուցիչը նայեց պատուհանից դուրս ու շարունակեց։ — Ա՛յ, այնտեղ, տեսնո՞ւմ եք, Շևչենկոյի պուրակն է, կողքին՝ փողոցի վրա շարված շատ ու շատ տներ։ Հարյուրամյա այդ սպիտակ խրճիթում է ապրել Տարաս Շևչենկոն։ Երեխաները թեպետ շատ անգամ էին անցել այդ փողոցով ու տեսել էին խրճիթը, բայց այժմ, կլանված ուսուցչի պատմածով, նայեցին դեպի պատուհանները։

— Տուն գնալիս կնայեք,— ասաց Յակով Դենիսովիչը։

Երբ աշակերտները հանդարտվեցին, նա շարունակեց.

— Տարաս Գրիգորևիչը շատ է տառապել կալվածատերերի, ոստիկանների ու նահանգապետերի ձեռքից։ Հարցաքննություն, բանտարկություն, աքսոր... Իսկ երբ աքսորից վերադառնում է Ուկրաինա, որոշում է բնակվել այստեղ, հարազատ վայրում, որպեսզի, ինչպես ինքն է գրել կտակում, տեսնի «և՛ դաշտերը կանաչ, և՛ Դնեպրը լուրթ, և՛ ափերը ժայռոտ»։

Բայց այստեղ՝ էլ նա հանգիստ չի գտնում։

Ոստիկանությունը գաղտնի կարգադրություն է ուղարկում. «Խիստ հետևել պաշտոնաթող զինվոր Տարաս Շևչենկոյին»։ Եվ շուտով մի գռեհ կալվածատիրոջ ծաղրելու պատճառով Շևչենկոյին նորից ձերբակալում են։ Չերկասսկիի բանտում նստած ժամանակ մի կտոր կապույտ թղթի վրա նա գրում է.

«Անցնում են թշվառները գյուղի.
Մերձդնեպրյան մարդիկ վշտաբեկ։
Ես խորհում եմ. ե՞րբ իմ ուղին
Կհասնի ինձ պայծառ մի եզերք.

Ու տեսնում եմ երազ... բլրակին,
Պուրակում ծաղկազարդ ու կանաչ.
Ինչպես մի աղջիկ քնքշագին,
Մի ճերմակ խրճիթ է կանգնած.

Իսկ հեռվում Դնեպրն է հոսում
Ու փայլում ինչպես հայելի...»

Ոստիկանության զեկույցներն այնքան անհիմն էին, որ հետո, երբ Շևչենկոյին տեղափոխում են Կիև, գեներալ-նահանգապետը ազատում է նրան կալանքից, թողնելով ոստիկանության գնդապետի հսկողության տակ։

«Գրողը ձեզ տանի»—մտքում ասում է Տարաս Շևչենկոն ոստիկանության հասցեին ու քայլում դեպի արվարձանները։ Այստեղ, մտածում է նա, ավելի հանգիստ կլինի, քան քաղաքի կենտրոնում։ Հասնելով Պրիորկի կոչվող արվարձանը, նա հան-



կարծ տեսնում է այգու մեջ կաթի պես սպիտակ մի խրճիթ, ծաղիկներով շրջապատված։ Նա հիշում է բանտում գրած իր բանաստեղծությունը, որի մեջ ճիշտ այդպիսի խրճիթ էր երազում։ Բակում, պարանի վրա չորանում էին մանկական վերնաշապիկներ, և թևերը քամուց թափահարվելով կարծես կանչում էին իրեն։

— Եկել եմ վարձով բնակարան խնդրելու,— ասում է Տարաս Գրիգորևիչը տանտիրուհուն։

— Դուք ո՞վ եք,— հարցնում է նա։

— Ինչպես տեսնում եք, մարդ եմ,— պատասխանում է Շևչենկոն։— Գուցե չե՞ք ցանկանա առայժմ ինձ պարտքով կերակրել։

Տանտիրուհին և՛ զարմանում է, և՛ ուրախանում։ Երևում է, որ բարի մարդ է եկողը։ Այնպես հասարակ է խոսում, անկեղծ ու սիրալիր. ինչպե՞ս չընդունել նրան։

Մի անգամ նա տանտիրուհուն խնդրում է 10 կոպեկ իրեն պարտք տալ (մինչև Պետերբուրգից սպասվելիք դրամի ստանալը) և լվանալ վերնաշապիկն ու թաշկինակները։ Երբ տանտիրուհին պատրաստվում է սպիտակեղենը լվանալ, թաշկինակների ծայրին նկատում է երկու հանգույց։ Մի հանգույցում հայտնաբերվում է 25 ռուբլի, իսկ մյուսում՝ երեք։ Գրքերի արանքից էլ գտնվում է 15 ռուբլի։

— Երևում է, որ հիմար թղթադրամներ են,— կատակում է Տարաս Շևչենկոն և մի պահ հիշելով բանտային ծանր օրերը՝ շարունակում.— բոլորովին մոռացել էի դրանց մասին... Այս լավ եղավ, երեխաներին մի լավ կհյուրասիրենք։

Տարաս Գրիգորևիչը շատ էր սիրում մանուկներին։ Ձայն էր տալիս թե չէ, երեխաներն իսկույն հայտնվում էին։ Խոսում էին, մեկը մյուսին խանգարելով, ծիծաղում ու հրճվում իրենց սիրելի «քեռու» հետ։ Արևը փաղաքշում էր նրանց իր շողերով ու Տարաս Գրիգորևիչին թվում էր, թե նրանք կենդանի ծաղիկներ են։ «Եթե երեխաները սիրում են մարդուն,— մտածում էր Շևչենկոն,— նշանակում է նա բոլորովին էլ վատը չի»։

Մյուս առավոտ երեխաներին հավաքելով այգու մոտ, նա ասում է.

— Մնացեք այստեղ, ես շուտով կվերադառնամ։

Եվ գնալով շուկա, Տարաս Գրիգորևիչն այնքան քաղցրեղեն է գնում, որ հազիվ հազ տուն է բերում։ Մի քիչ խոտ են հնձում, փռում բակում, և Տարաս Գրիգորևիչը սկսում է հյուրասիրել բոլորին։ Անչափ ուրախացած երեխաները երկար ժամանակ ծիծաղում են, կատակում, թավալվում խոտերի վրա։ Բակի դռնակը անընդհատ բաց ու խուփ է լինում. փոքրիկ հյուրերը գալիս ու գնում են։ Բակում արդեն նեղվածք է։ Տանտիրուհին խորհուրդ է տալիս տեղափոխվել մարգագետին, այնտեղ, ուր այժմ գործարանն է կանգնած։

Յակով Դենիսովիչը մի պահ շունչ առնելով՝ շարունակեց.

— Բերում են այնտեղ գնված խնձորը, տանձը, օղաբլիթը, անուշահացն ու կոնֆետը և մինչև երեկո ուրախանում։ Իսկ երբ երեխաներն սկսում են ցրվել, Տարաս Գրիգորևիչը երկար նայում է նրանց հետևից։ Մայր մտնող կարմիր արևը վերջին ցոլքերն է սփռել երեխաների վրա, և նորից բանաստեղծին թվում է, թե նրանք կենդանի ծաղիկներ են, այս անգամ արդեն կարմիր ծաղիկներ...

Երբ նա ստացավ Պետերբուրգից իր ստանալիք դրամը և պատրաստվեց ճանապարհվելու, բոլորը տխրեցին։ «Կարծես մի քար ընկավ մեր սրտի վրա, երբ քեռին գնաց» ասում էին մանուկները։ Իսկ հիվանդ տանտիրուհին հուզված ասում էր, որ Շևչենկոն թողեց վառ ու արևոտ մի հուշ իր դառը կյանքում։



Ահա և տանն է Իլկոն։ Ինչ էլ որ անում է, նրա մտքից չի հեռանում ուսուցչի պատմածը։

Երեխաների հետ բակում մի քիչ խաղալուց հետո նստում է դասերը սովորելու։ Հանկարծ ներս է վազում նրա փոքրիկ քույրիկը՝ Գալյան և «չ»-ի փոխարեն «ց» արտասանելով ասում.

— Իսկ ես մի ինչ-որ բան գիտեմ։

— Իսկ ի՞նչ գիտես դու,— նույն տոնով հարցնում է Իլկոն ժպտալով։

Քույրիկը ցատկում է աթոռին և արտասանում՝ ձեռքերով ցույց տալով տափաստանի լայնությունը։

Երբ կմեռՑեմ, թաղեցեք իՑճ
Մեր ՈւկրաիՑայում,
Մի բարճրաբերճ բլրի վրա,
Արճակ տափաստաՑում...

— Ո՞վ քեզ սովորեցրեց, — հարցնում է Իլկոն զարմացած։ Չէ՞ որ Գալյան դեռևս կարդալ չգիտի, միայն հատ ու կենտ տառեր է կարողանում ջոկել։

— Օկսանկան, — պատասխանում է քույրիկը, դժգոհ, որ եղբայրը չթողեց մինչև վերջ արտասանել։ — Նա կանգնել էր նստարանի վրա և արտասանում էր, իսկ մենք բոլորս լսում էինք։

Մնալով մենակ, Իլկոն մտածմունքի մեջ է ընկնում։ Թեպետ լուծում է խնդիրները, սակայն ամեն անգամ նրա աչքի առաջ է գալիս Տարաս Գրիգորևիչը. նա մոտենում է սպիտակ խրճիթին, խոսում է հիվանդ տանտիրուհու հետ, խոտ է հնձում, քաղցրեղենով հյուրասիրում երեխաներին… Նույնը տեսնում է նա գիշերը երազում։ Մեկ նա լսում է, թե ինչպես է Գալյան արտասանում աթոռին կանգնած, մեկ տեսնում է, թե ինչպես



բանտարկված Շևչենկոն բանաստեղծություն է գրում մի կտոր կապույտ թղթի վրա, ինչպես է թափառում Պրիորցիում և մոլորվում է կեչիների պուրակում։ Մեկ էլ Իլկոն տեսնում է Տարաս Գրիգորևիչին քաթանե թեթև վերարկու հագած։ Խշխշում են կեչիների տերևները, վառվում են ծաղիկները գույնզգույն կրակների պես… Հետո Տարաս Գրիգորևիչը մոտենում է Իլկոյին և վերցնելով նրա ձեռքը, ասում. «Գնանք, ուղեկցեմ քեզ մինչև տուն»։

Իսկ առավոտյան դպրոց գնալիս, Դովգայը կանգ է առնում սպիտակ խրճիթի դիմաց և երկար դիտում խրճիթը, բակը, պուրակը։

Ինչ-որ մեկը բռնում է նրա արմունկից։

— Ի՞նչ ես կանգնել, — հարցնում է իր դասընկեր Եվգեն Զավադան։

— Երազում Տարաս Գրիգորևիչին տեսա, — կամաց ասում է Իլկոն, — հետո խոսեց…

— Իսկ գիտե՞ս ինչ, — ու մի հետաքրքիր միտք է փայլում Զավադայի շագանակագույն աչքերում։ — Արի մեր դպրոցում պատրաստենք այդ խրճիթի մակետը։

— Եվ բակը… — ասում է Իլկոն ուրախացած։

— Եվ պուրակը, — ավելացնում է Եվգենը։ — Եվ Տարաս Գրիգորևիչի արձանը՝ փոքրիկ տղայի ձեռքից բռնած։ Արի ինձ մոտ, ես շատ պլաստիլին ունեմ։

Եվ նրանք երկուսով Զավադայենց տանը սկսում են շինել մակետ, որի վրա կամաց-կամաց կարծես կենդանանում են և՛ տղաների երազանքը, և՛ Յակով Դենիսովիչի պատմածը, և փոքրիկ Գալյայի թոթով արտասանած խոսքերը։

Կերտում են ու մտովի տեսնում պուրակում, խրճիթի դեմ կանգնեցրած Շևչենկոյի և փոքրիկ տղայի գրանիտե արձանը, իսկ շուրջը՝ բարդիներ ու ծաղիկներ։ Ապա զրուցում են այն մասին, թե ինչքան գեղեցիկ կլինի իրենց մակետը, որը անպայման կդնեն դպրոցի Շևչենկոյի անկյունում։

* * *

Նոր գարնան ցուրտ մթնաշաղ է։ Երկինքն անամպ է, աստղազարդ։ Վառվում են էլեկտրական լամպերը՝ լուսավորելով փողոցներն ու տները։

Իլկոն մոտենում է պուրակին։ Երեկոյան քամուց ճոճվում են նորատունկ ծառերը։ Շուրջը խաղաղ է՝ խորհրդավոր։ Նա քայլում է ու մտածում. «Այլ բարդիներ են հարկավոր տնկել կածանի կողքերին, որը տանում է դեպի Շևչենկոյի պուրակը։ Եվ ինչքան գեղեցիկ կլինի այստեղ. բարդիներ, կանաչ խոտ, և Շևչենկոյի արձանի շուրջը կվառվեն կարմիր ծաղիկներ։ Դա կլինի երեխաների երախտագիտության խոսքը ի նշան Տարաս Գրիգորևիչի դեպի իրենց ունեցած մեծ սիրո։

Իլկոն հոգու խորքում կարծես լսում է նրա բառերը «Խոհեր իմ, խոհեր իմ, ծաղիկներ իմ, երեխաներ…» Եվ հուզմունքից ջերմանում է Իլկոյի սիրտը։

… Ահա և եկավ գեղեցիկ գարունը։ Արդեն զգացվում է մոտալուտ ամռան շունչը։ Իլկոն չի մոռանում հաճախել հարազատ ու սիրելի վայրը։ Գալիս է հուզված։ Նայում է կանաչած բարդիներին։ Իսկ ինչպես են բացվել ծաղիկները։ Իլկոն ջրում է այդ ծաղիկները, որպեսզի նրանք միշտ գեղեցիկ ու թարմ մնան։

Ուկրաիներենից թարգմ.
ՄԱՐԼԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆ



ԷԴԳԱՐ ՇԱՀԻՆ — ԼԻԶԵՏՏԱՅԻ ԴԻՄԱՆԿԱՐԸ

*Հայաստանի Պետական պատկերասրահ*

## ՄԱՆՈՒՇԱԿԻՆ

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Ա՛յ մանուշակ քնքշաբույր,
Ծաղիկների սիրուն քույր,
Հերիք մնաս հողի տակ,
Հերիք պահես աչքդ փակ։
Գարունն արդեն եկել է,
Նախշուն շորերն հագել է,
Հենց աչիկդ բաց անես,
Այտդ շաղով թաց անես,
Արևը քեզ դուր կգա,
Բզեզը քեզ հյուր կգա,
Մանուկներս կարոտով
Կհիանանք քո հոտով։
Դե արթնացիր, ի՛մ սիրուն,
Առանց քեզ էլ ի՞նչ գարուն։

## ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ԲԱՌԱՐԱՆ

ԲԱԶԻԼԻԿ — սյունազարդ սրահ: Հին հույները, երբ դեռ անծանոթ էին կամար կապելու արվեստին, սրահները ծածկում էին գերաններով: Որպեսզի սրահը որոշ լայնություն ունենար, նրանք սրահի ներսում գերանների երկարության համապատասխան սյուներ էին շարում: Սյուներով անջատված սրահները կոչվում էին նեֆ: Կենտրոնական նեֆի վերջում գտնվում էր բեմահարթակը: Այս սրահները ծառայում էին ժողովների, խաղերի, պարերի համար: Հայկական ճարտարապետական հուշարձան-տաճարներից շատերը նույնպես կառուցված են բազիլիկայի տիպի:

ԶԱՐԴԱՔԱՆԴԱԿ — նույնպես շատ է տարածված հայկական ճարտարապետության մեջ: Զարդաքանդակին բնորոշ է բազմապիսիությունը, բարձր գեղարվեստական ճաշակը, երևակայությունը: Այս ասպարեզում հայերը անգերազանցելի վարպետներ են ունեցել. նույն հուշարձանի վրա բոլոր զարդաքանդակները եղել են տարբեր, անգամ խոյակները: Լավ օրինակ են Հաղթանակի մոնումենտի վրա արված զարդաքանդակները:

ԿԱՄԱՐԱՇԱՐՔ — շատ բնորոշ է հայկական ճարտարապետությանը, որովհետև Հայաստանը քարով շատ է հարուստ: Ամենահին ժամանակներից սկսած մեզ մոտ շենքերը կառուցում են քարից: Քանի որ ճարտարապետական կառույցներում մարդիկ աշխատում են ճիշտ արտահայտել օգտագործվող նյութի կառուցողական հնարավորությունները, իսկ քարի և աղյուսի համար բնորոշը կամարն է: Հայկական հուշարձան-տաճարների մեծ մասն ունի կամարաշարք, օրինակ՝ Զվարթնոցը, իսկ ժամանակակից կառույցներից՝ Լենինի հրապարակը շրջապատող շենքերը և այլն:

ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ԱՆՍԱՄԲԼ — կառույցների մի խումբ, որը ներդաշնակ միասնություն է կազմում մասշտաբների, գեղարվեստական արտահայտչականության, ոճերի տեսակետից: Մեր միության ամենագեղեցիկ անսամբլներից է Լենինի հրապարակը Երևանում, որտեղ կառավարական տունը, հյուրանոցը, թանգարանը և մյուս՝ շենքերը միասին մի գեղեցիկ, ներդաշնակ միասնություն են կազմում:

Սովորաբար ճարտարապետական անսամբլները ունենում են իրենց կոմպոզիցիոն կենտրոնը, հնում դա հաճախ եղել է եկեղեցին, օրինակ՝ սուրբ Պետրոսի եկեղեցին Հռոմում: Իսկ մեր հրապարակում կոմպոզիցիոն կենտրոնը Լենինի արձանն է:

ՔԻՎ. — հին հունական և հռոմեական տաճարների տանիքները լինում էին երկթեք: Որպեսզի անձրևաջուրը չփչացներ ու չկեղտոտեր պատերը, ճարտարապետները շենքի պատերը ավարտում էին դուրս եկած մասով՝ քիվով: Հետագայում, երբ հնարավորություն եղավ ջուրը այլ կերպ հեռացնել, քիվը կորցրեց իր գործնական նշանակությունը:

# Մի անգամ

* * *

Մի բանաստեղծ գանգատվում է Օսկար Ուայլդին, որ մամուլը արհամարհական դիրք է բռնել իր բանաստեղծությունների հանդեպ։

— Դա իսկական դավադրություն է իմ նկատմամբ, լռության դավադրություն, ի՞նչ պետք է անեմ ես,— ասում է նա։

— Միացիր դրան,— պատասխանում է Օսկար Ուայլդը։

* * *

Մի անգամ Մարկ Տվենը, իր ընկերներից մեկի հետ նավով արտասահման էր գնում։ Մի օր նրանց ճաշկերույթի հրավիրեցին։ Ճաշկերույթի ժամանակ սկսեցին ճառեր փոխանակել։ Առաջինը խոսեց Մարկ Տվենը։ Նրա ճառը տևեց քսան րոպե և ջերմ ընդունելության արժանացավ։

Հետո եկավ նրա ընկերոջ հերթը։

— Պարոն Թամադա, տիկնայք և պարոնայք,— ասաց Մարկ Տվենի ընկերը կանգնելով։— Այստեղ գալուց առաջ ես ու Մարկ Տվենը փոխադարձաբար համաձայնության եկանք, որ մեր ճառերը փոխանակենք, այսինքն՝ նա պետք է արտասանի իմ ճառը, իսկ ես՝ նրանը։ Նա հենց հիմա արտասանեց իմ ճառը, շնորհակալություն այն ջերմ վերաբերմունքի համար, որ դուք ցույցաբերեցիք, բայց, ցավոք սրտի, ես կորցրել եմ Մարկ Տվենի ճառի նշումները և հիմա ոչինչ չեմ հիշում։



* * *

Հանճարեղ դերասան Պետրոս Ադամյանը թատրոնի կարիքների համար մեծ գումար է պարտք վերցնում մի հարուստ վաշխառուից։

Երբ պարտքի ժամկետն անցնում է, վաշխառուն գալիս է կամ պարտքը գանձելու, կամ թատրոնը փակելու։ Ադամյանը, փող չունենալով, ծառայի միջոցով հայտնում է, որ հիվանդ է։

Վաշխառուն ուզում է անձամբ ստուգել և մտնում է Ադամյանի սենյակը։ Դերասանին նա գտնում է անկողնում պառկած։ Բռնելով նրա ձեռքը, վաշխառուն գունատված գոչում է.

— Իսկույն բժի՛շկ կանչեք, թե չէ նա կմեռնի...

— Իսկ մենք բժշկի փող չունենք,— ասում է ծառան։

Մտածելով, որ եթե դերասանը մեռնի, ինքը կկորցնի պարտքն ու տոկոսները, վաշխառուն համաձայնվում է իր հաշվին բժիշկ կանչել։



Բժիշկը գալիս և առաջարկում է հիվանդին տեղափոխել հիվանդանոց, որովհետև դրությունը շատ անմխիթար է։

Վաշխառուն բոլոր ծախսերը վերցնում է իր վրա և դրամը թողնելով հեռանում։ Նրա գնալուց անմիջապես հետո, Ադամյանը ոտքի է կանգնում։

— Այս անգամ էլ պրծանք,— ասում է նա։— Ես կարողացա փրկել թատրոնի դրությունը՝ խաղալով իմ նո՛ր դերերից մեկը։



ԷԴԳԱՐ ՇԱՀԻՆ — ԿՐՈՒԱԶԻԿ (ԲՐԵՏԱՆ)

Հայաստանի Պետական պատկերասրահ

# ԳՈՒՅՆԵՐԻ ՎԵՃԸ

*ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ*

Վիճեցին մի օր գույներն իրար հետ,
Թե ո՞րն է սիրուն, ո՞րը օգտավետ:
[illegible] ասաց՝
— Ես եմ աշխարհ[illegible],
Թևերս փռեմ՝ կգա գիշերը:
Սպիտակն ասաց՝
— Չեմ թողնի երբեք.
Թևերս փռեմ՝ կբացվի ցերեկ,
Քո սև գիշերը կցրեմ իսկույն,
Կլուսավորեմ ամեն մի անկյուն:
Կարմիրն էլ ասաց՝
— Հաղթություն եմ ես,
Բյուր հերոսների արյունով ներկված.
Անցել եմ ռազմի ճամփան հրակեզ
Եվ պայքարների ուղին փառապանծ:
Իսկ կանաչն ասաց՝
— Ես էլ պակաս չեմ.
Սարեր ու ձորեր ինձնով կանաչ են.
Հոգնած ձմեռվա ցրտից ու բուքից,
Մարդիկ անհամբեր սպասում են ինձ:
Կապույտն էլ ասաց՝
Երկինքը եմ անծայր,
Իմ ծոցում աստղեր ու արև պայծառ,
Արբանյակներ են իմ գիրկը թռչում,
Ինձ մոտ է գալիս ամեն մի թռչուն:
Դեղինը ասաց՝
—Իսկ ես՝ վառ աշուն.
Մրգեր, տերևներ ներկում եմ, նախշում,
Խնձոր ու դեղձ, ու սերկևիլ,
Ողջ ես եմ օծում գույնով արևի:
Արևն այդ լսեց ու այսպես ասաց.
—Դուք ծիածանին նայեք իմ կապած,
Իրենց տեղն ունեն՛ գույները բոլոր,
Բոլորդ էլ կյանքում պետք եք, հար-
կավոր:



# ՎՏԱՆԳԱՎՈՐ ՊԱՐ

Կան պարեր ժապավեններով, դափերով, հովհար-ներով, թմբուկներով, սափորներով և նույնիսկ բար-ձերով:

Բայց դուք լսե՞լ եք օձերով պարի մասին:

Դա աֆրիկական սուկամա ցեղի պարն է՝ նվիր-ված Բերքի տոնին: Առավոտյան գյուղը արթնանում է թմբուկի ուժգին վարկերից: Նեգրերը, տոնական ըզ-գեստներ հագած, շրջապատում են կենտրոնական հր-րապարակը: Սկզբում մեղմ տեմպ ունեցող պարը հե-տըզհետե կրակոտ է դառնում: Հանդեսի ամենալար-ված պահին հրապարակ են բերում վիշապներով լե-ցուն արկղներ և բացում դռնակները: Օձերը սողալով ցրվում են պարողների մեջ: Բայց մարդիկ ոչ միայն չեն փորձում փախչել, այլ, ընդհակառակը, սկսում են օձերին իրենց կողմը գրավել: Պարողներից մեկը թույլ է տալիս, որ օձը փաթաթվի իրեն. [illegible] սա շարունա-կում է պարը այդ վտանգավոր պարընկերոջ հետ: Մյուսը պառկում է օձի կծիկի վրա և քնած է ձևա-նում:

Պարողների գրգռված շարժումներից օձերը կատա-ղում [illegible] և սկսում խայթել: Այդ պահին բժիշկը օձի խայթած տեղերին քսում է բուժիչ լուծույթ, և պարը շարունակվում է:

Բերքի տոնը վերջանում է նրանով, որ մի քանի հոգով վերցնում են ամենամեծ վիշապին ու տանում գյուղամիջով:

Ինչո՞վ է բացատրվում այդ տարօրինակ հանդեսը և ի՞նչ կապ ունի Բերքի տոնի հետ:

Այդ ցեղի մարդկանց կարծիքով վիշապները պտղա-բերության աստծու սիրելի կավակներն են: Որպեսզի շնորհակալություն հայտնեն առատ բերքի համար, նը-րանք պարով կվարձացնում են «աստծո կավակներին»



# ՓՈՔՐԻԿ ՇՈՊԵՆԸ

ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ապագա հանճարեղ կոմպոզիտոր և դաշնակահար Ֆրեդերիկ Շոպենը 13 տարեկան էր: Հայրը ամեն օր տանը երաժշտության դասեր էր տալիս: Մի անգամ նա ինչ-որ տեղ էր գնացել: Մեծ սենյակում հավաքվել էին աշակերտները և սպասում էին իրենց ուսուցչին: Մոռանալով, որ կից սենյակում պառկած է Շոպենի հիվանդ մայրը, տղաները սկսեցին գոռգոռալ, աղմկել, ուժեղ ակորդներով նվագել: Աղմուկը անհանգստացրեց հիվանդ մորը: Նա իր մոտ կանչեց Շոպենին և ասաց.

— Ֆրեդերիկ, սիրելիս, գնա և ասա թող հանգիստ մնան. չէ՞ որ ես հիվանդ եմ:

Ֆրեդերիկը, իսկույն վազեց տղաների մոտ և փորձեց լռեցնել նրանց, բայց ոչ ոք ուշադրություն չդարձրեց փոքրիկի վրա: Ֆրեդերիկը սրտանեղությունից քիչ մնաց լաց լիներ: Հանկարծ մի միտք ճառագեց նրա ուղեղում: Նա վազեց դեպի մեծ դաշնամուրը, նստեց և սկսեց նվագել: Սկզբում ոչինչ չէր լսվում աղմուկի մեջ, բայց հետզհետե սենյակը լցվեց երկնային մեղեդիներով, այնպես գեղեցիկ ու թովիչ, որ թվում էր, թե իսկապես երեկո է: Կապույտ մշուշը հետզհետե սուզվում է մթան մեջ: Ահա հնչում են գյուղական եկեղեցու զանգերը: Դաշտից տուն են դառնում հնձվորները, լսվում է նրանց հոգնած ոտքերի ձայնը: Կամաց-կամաց ամեն ինչ խաղաղվում է:

Հանկարծ Ֆրեդերիկը նկատեց, որ սենյակում բոլորը լռել են: Նա շարունակեց նվագել. երեկոյին փոխարինեց գիշերը: Լռեցին վերջին շշուկները, ու իրար հետևից հանգան գյուղական ճրագները: Բոլորը քնած են, միայն գիշերային անդորրության մեջ ճռռում է անհանգիստ ճռռիկը:

Ֆրեդերիկի հայրը, որ արդեն վերադարձել էր, ներս մտավ սենյակ և զարմացած կանգ առավ դռների մեջ: Տղաները քնել էին աթոռներին՝ ամեն մեկն իր գործիքը գրկած, միայն փոքրիկ Ֆրեդերիկը նվագում էր ինքնամոռաց:

Ամեն ինչ հասկանալուց հետո, հայրը շոյեց Շոպենի մազերը:

— Ապա արթնացրու տղաներին, Ֆրեդերիկ,— ասաց նա:

Ու տղան ուժեղ խփեց դաշնամուրի ստեղներին: Գիշերային խաղաղությունը ընդհատվեց: Հեռվում խուլ որոտաց կայծակը և խփեց հինավուրց կաղնուն: Քամուն հաջորդեց փոթորիկը, ապա սկսվեց հորդառատ անձրևը:

Հանկարծ տղաներն իրար խառնվեցին և վեր թռան տեղերից:

Իսկ փոքրիկ Շոպենը կանգնել էր դաշնամուրի մոտ ու ծիծաղում էր:



## ՔԱՐԵ ԳԼԽԻ ՀԱՆԵԼՈՒԿԸ

Այն, ինչ տեսնում եք նկարում, գտնվում է Պետերգոֆյան նշանավոր պուրակից հինգ կիլոմետր հեռավորության վրա, դեպի ծովը գնացող կածանի եզրին:

Դա գրանիտե գլաքարի վրա քանդակված մարդկային մի խոժոռ կերպարանք է, որն անցորդի վրա թողնում է անջնջելի տպավորություն: Անցորդներին թվում է, թե ընկել են մի կախարդական աշխարհ և հանդիպել «Ռուսլան ու Լյուդմիլա» պոեմում նկարագրված հսկա գլխին: Տեղացի ծերերն ասում են, որ դա իրոք Պուշկինի նկարագրած գլուխն է և նախկինում ունեցել է սաղավարտ: Գլխի մոտերքում վերջերս կտրված վիթխարի կաղնին կարծես հաստատում է նրանց ասածը:

Եվ այսպես, մինչև օրս չի պարզաբանված այդ արտասովոր գլխի պատմությունը, թե ով և երբ է քանդակել այն:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջում՝ հատված Վելասկեսի **«Թագաժառանգ Բալտասարը»** նկարից

### ՈՒՂՂՈՒՄ

*Մեր ամսագրի նախորդ համարում տպագրված «Դարբասապանը» պատմվածքի հեղինակը Ռաֆայել Ղազանչյանն է:*



| | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | 2 | 3 | 4 | | | | | | | |
| 5 | 4 | 6 | 7 | 8 | | | | | | |
| 8 | 4 | 6 | 9 | 2 | | | | | | |
| 10 | **11** | **2** | 12 | 13 | 14 | | | | | |
| 2 | 8 | 14 | 12 | 7 | 8 | | | | | |
| **5** | 18 | 4 | 16 | 14 | 12 | 14 | | | | |
| 13 | 7 | 18 | 2 | **16** | 14 | 5 | | | | |
| 19 | 15 | 20 | 14 | 21 | 17 | 14 | 12 | | | |
| **10** | 11 | 14 | 3 | **15** | **12** | **7** | 8 | | | |
| 19 | 14 | 17 | 13 | 7 | 8 | 5 | 13 | 2 | | |
| 20 | 14 | 19 | 14 | 16 | 6 | 17 | 14 | 12 | | |
| **22** | **7** | 5 | 16 | 14 | 13 | 7 | 8 | 2 | 19 | |
| 5 | **23** | **4** | **12** | 9 | 2 | 14 | 6 | 17 | 14 | 12 |

## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԳԱՂՏՆԱԳԻՐ «ԿՈՄՊՈԶԻՏՈՐՆԵՐ»

*14, 11, 18, 14, 5, 16—օպերա՝ գրված Հով. Թումանյանի պոեմի թեմայով,*

*8, 14, 6, 22, 14, 8, 17, 14, 12, 13, 14—հին ռևոլյուցիոն երգ,*

*5, 23, 14, 6, 16, 14, 13—Ա. Խաչատրյանի բալետներից,*

*1, 14, 20—գերմանական խոշոր կոմպոզիտոր,*

*18, 14, 3, 15, 6, 13, 14—լեհական ժողովրդական պար,*

*10, 14, 18, 18, 14—յոթ երաժշտական ձայնանիշերի հաջորդականություն,*

*21, 2, 8, 14, 12, 2,—հայ գուսան,*

*19, 2, 12, 14, 6, 4, 5—Կոմիտասի երգերից.*

*14, 2, 9, 14—օպերա՝ նվիրված Սուեզի ջրանցքի բացմանը,*

*Թվերը տառերով փոխարինելուց հետո հորիզոնական շարքերում դուք կկարդաք 13, իսկ շրջագծված վանդակներում՝ 3 կոմպոզիտորի անուն:*


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—39—06:*

*ՎՖ 01507. Պատվեր 218: Տպաքանակ՝ 9500: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 4 III 1961 թ.: ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, ... 21:*

Գինը 20 կ.:



ՁԻԱՎՈՐ

ԳԱՍՊԱՐՅԱՆ ԼԵՎՈՆ *(Երևան, 6 տարեկան)*



ԵՂՆԻԿ

ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ՍՈՒՐԵՆ

*(Երևան, Չեխովի դպրոցի առաջին դաս. աշակերտ)*

ԿՌՈՒՆԿ



Երեխանե՛ր, ահա դուք ընթերցեցիք ամբողջ համարը և հասաք այս վերջին էջին։ Դուք ծանոթացաք հայ ծաղկող-նկարիչ Մոմիկի կյանքին, դրվագներ կարդացիք նկարիչներ Դոմյեի, Պերովի, կոմպոզիտորներ Բախի ու Շոպենի կյանքից, ծանոթացաք բրուտագործությանը և ուրիշ շատ տեղեկություններ ստացաք արվեստի մասին։ Դուք բազմաթիվ նկարներ տեսաք ամսագրի էջերում, որոնցից շատերը արվեստի հազվագյուտ նմուշներ են։

Ուրիշ խոսքով, տեսաք, որ «Պիոներ»-ի այս համարը տարբերվում է մյուս համարներից, ամբողջովին նվիրված է արվեստին։ Լա՞վ է, որ այսպես է արված, ինքներդ պիտի ասեք։

Գրեք ձեր կարծիքը այս համարի մասին և ուղարկեք խմբագրություն։ Ցուցե դուք կուզենայիք, որ այսպիսի համարներ հաճախակի՞ լինեն։ Գրեք նաև ձեր առաջարկությունները։

ՌԵՄԲՐԱՆԴՏ ՎԱՆ ՌԵՅՆ

ԱՂՔԱՏՆԵՐԸ ՏԱՆ ԴՌԱՆ ՄՈՏ

ՖՐԱՆՑԻՍԿՈ ԳՈՅԱ

ՑԼԱՄԱՐՏ



Հայաստանի Պետական պատկերասրահ